

ՍՍՀՄ պետական զինանշանը

# ՀԱՅՐԵՆԻՔԻ ԽՈՐՀՐԴԱՆԻՇՆԵՐԸ

Պիոներական խորհրդանիշները՝ դրուժինայի դրոշակը, ջոկատի դրոշակը, պիոներական ողջույնը, նշանաբանը, փողկապը, կրծքանշանը արտացոլում են մեր պետության խորհրդանիշները։ Նոր սահմանադրության մեջ խոսվում է ՍՍՀՄ զինանշանի, դրոշակի, հիմնի և մայրաքաղաքի մասին։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԶԻՆԱՆՇԱՆԸ ԻՐԵՆԻՑ ՆԵՐԿԱՅԱՑՆՈՒՄ Է ԵՐԿՐԱԳՆԴԻ ՖՈՆԻ ՎՐԱ ՊԱՏԿԵՐՎԱԾ ՄՈՒՐՃ ՈՒ ՄԱՆԳԱՂ՝ ԱՐԵՎԻ ՃԱՌԱԳԱՅԹՆԵՐԻ ՄԵՋ, ՀԱՍԿԵՐՈՎ ՇՐՋԱՆԱԿՎԱԾ, ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԼԵԶՈՒՆԵՐՈՎ ՄԱԿԱԳՐՎԱԾ՝ «ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք»։ ԶԻՆԱՆՇԱՆԻ ՎԵՐԻՆ ՄԱՍՈՒՄ ՀՆԳԱԹԵՎ ԱՍՏՂ Է։

Մեր երկրի առաջին պետական զինանշանը հաստատվել է 1923 թվականի հուլիսի 6-ին։ Վլադիմիր Իլյիչ Լենինը անձամբ մասնակցել է երիտասարդ Սովետների

## Եղիշե Չարենց



Հայ ժողովուրդը, Սովետական Միության եղբայրական ժողովուրդների հետ, այս տարի մեծ շուքով տոնում է հեղափոխության մեծ երգիչ, հանճարեղ բանաստեղծ Եղիշե Չարենցի ծննդյան 80-ամյակը։

Չարենցը մանուկների մեծ բարեկամն էր։

Նա «Պատկոմ»՝ «Պատանի կոմունար» (որը հետագայում վերանվանվեց «Հոկտեմբերիկ», ապա՝ «Պիոներ») մանկապատանեկան, գրական-գեղարվեստական ամսագրի հիմնադիրներից ու խմբագրական կոլեգիայի առաջին անդամներից էր։

«Պատկոմ»-ի հենց առաջին համարում տպագրվել է Լենինի «Ընկերները» բանաստեղծությունը Չարենցի թարգմանությամբ, իսկ 1929 թվականին Չարենցը տպագրեց իր «Մի հոկտեմբերիկի» բանաստեղծությունը, որը մեր մանկական գրականության անմահ գոհարներից է։

### ՄԻ ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿԻ

*Արև ունես քո աչքերում,*
*Քո աչքերում, քո ձեռքերում,*
*Քո այդ փափլիկ թաթիկներում,*
*Քո խատուտիկ աչիկներում։—*
*Քո խատուտիկ աչիկներով*
*Պիտի նայես մի օր հեռուն,*
*Դրոշ պիտի պահես մի օր*
*Քո ամրացած ձեռիկներում.—*
*Ու չմարող իմ երգերով*
*Պիտի գնաս դեպի գրոհ...*



# Չմռան իրեղեն

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Առավոտից դրսում աղմկում էր ձյունախառն ու մրսած քամին։ Նա բակից բակ էր թռչում ու տանիքներից ձյուն խլելով շպրտում այս ու այն կողմ։ Կարծես ի պատասխան նրա թշնամական սուլոցին, տաք վառարանի մեջ սովոր շան նման գռմռում էր թեժ կրակը։ Բոցերը, այրվող չոր փայտը պարուրած, լիզում էին շիկացած երկաթն ու թիթեղյա ծխնելույզ-խողովակներով բարձրանում դեպի տանիք։ Իսկ այնտեղ ցուրտ ոռանքն անմիջապես իր գիրկն էր առնում ծխի կապտավուն քուլաներն ու ծվատում, երկնքի*





հանրապետության՝ գերբի ըստեղծմանը:

Գերբի յուրաքանչյուր խորհրդանիշ կրում է Հոկտեմբերի երկրի հիմնական գաղափարները. խաչաձևված մուրճն ու մանգաղը՝ բանվորների և գյուղացիների անխախտ դաշինքն են արտահայտում, ծագող արևը՝ մարդկության լուսավոր ապագան՝ կոմունիզմը, կարմիր աստղը՝ երկրագնդի հինգ մայր ցամաքները, սովետական ժողովրդի հաղթանակի մեծությունը, մեր պետության ուժն ու նրա սահմանների անձեռնմխելիությունը: Ցորենի հասկերը երկրի հարստությունն ու ծաղկումն են արտահայտում, 15 լեզուներով մակագրված կոմունիստական կուսակցության մանիֆեստի լոզունգը՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»՝ ՍՍՀՄ ժողովուրդների ինտերնացիոնալ համերաշխությունը բոլոր երկրների աշխատավորության հետ:

ՍՍՀՄ պետական գերբը խորհրդանշում է իրավահավասար միութենական հանրապետությունների կամավոր միավորումը մի միասնական պետության մեջ, սոցիալիստական ազգերի իրավահավասարությունը:

Գերբի հիմնական գույներն են կարմիրը և ոսկեգույնը:

Գերբի կարմիր գույնը խոսում է մեծ նպատակի նվաճման՝ կոմունիստական հասարակարգի կառուցման գործում ցուցաբերվող արիության, տոկունության ու անվախության մասին: Ոսկեգույնը նշանակում է աշխարհում առաջին բանվորագյուղացիական պետության մեծությունը, փառքն ու հզորությունը:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԴՐՈՇԱԿԸ ԻՐԵՆԻՑ ՆԵՐԿԱՅԱՑՆՈՒՄ Է ՈՒՂՂԱՆԿՅՈՒՆ ԿԱՐՄԻՐ ՊԱՍՏԱՌ, ՈՐԻ ՎԵ-



# Նժույգները

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

պարկության մեջ լուծում նրանց:

Վարդան պապն իր թախտին թիկն տված, վերադասավորում, շուռ ու մուռ էր տալիս թասբեհի գույնզգույն քարերը: Վարդան թոռը հիացմունքով նայում էր բարակ թելերի վրայով հերթով մեկ այս, մեկ այն կողմ սահող գույնզգույն, տոնածառի խաղալիքների նման փայլփլող այդ քարերին, որոնք անընդհատ մեղմորեն բախվում էին իրար ու առաջ հրում մեկմեկու:

— Ծո՛ւտ ջան, մի տես կրակին ի՞նչ եղավ,— ասաց պապը կզալով, որ վառարանը լռեց:







ՍՍՀՄ պետական դրոշը

**ՐԻՆ ԱՆԿՅՈՒՆՈՒՄ՝ ԿՈԹԻ ՄՈՏ, ՊԱՏԿԵՐՎԱԾ ԵՆ ՈՍԿԵԶՕԾ ՄՈՒՐՃ ՈՒ ՄԱՆԳԱՂ, ԻՍԿ ԴՐԱՆՑ ՎԵՐԵՎՈՒՄ՝ ՀՆԳԱԹԵՎ ԿԱՐՄԻՐ ԱՍՏՂ՝ ԵԶՐ-ՋԱՆԱԿՎԱԾ ՈՍԿԵՐԻԶՈՎ: ԴՐՈՇԱԿԻ ԼԱՅՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԵՐԿԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆ Է՝ 1×2:**

Մեր պետության դրոշակի գույնը սովետական իշխանության, մեր հայրենիքի ազատության ու անկախության համար մղված պայքարում թափված արյան գույնն է, հույսի ու պայքարի, ուրախության ու հաղթանակի գույնը: Կարմիր դրոշակով էին բանվորները դուրս գալիս առաջին մայիսյան ցույցերին: Կարմիր դրոշակն էր փողփողում 1905 թվականին Կրասնայա Պրեսնյայի բարիկադների վրա: Կարմիր դրոշակներով էր զարդարված Մոսկվան Հոկտեմբերի առաջին տարելիցին:

ՍՍՀՄ պետական դրոշը մշտապես փողփողում է ՍՍՀՄ Գերագույն սովետի շենքի վրա՝ Կրեմլում: Այն բարձրացվում է ի պատիվ համամիութենական ու միջազգային հեղափոխական տոնակատարությունների, պետական կամ հասարակական կազմակերպությունների կողմից անցկացվող միջոցառումների ու արարողությունների ժամանակ:

Բոլոր պիոներները պետք է իմանան, որ պիոներական կազմակերպություններում ՍՍՀՄ պետական դրոշը բարձրացվում է





Թոռը մոտեցավ վառարանին ու բացեց դռնակը: Նա երկաթե ունելիով մի քիչ խառնեց անբոց շեղջերն ու փայտի նոր կտորներ դարսեց դրանց վրա: Հետո, երբ կկոցած աչքերով նայեց նոր ծնվող բոցերին, նրան թվաց, թե վառարանի փոքրիկ աշխարհում նորից հրեղեն ձիերի երամակներ են թռչկոտում: Նրանց անկանգ վազքից տաքացած օդը խփում էր տղայի դեմքին, և նա մի քիչ ետ քաշվեց:

— Պա՛պ, ա՛յ պապ,— ձայնեց նա:— Կրակի ձիերը պարում են:

— Հրեղեն ձիերն էդպես են, մատա՛ղ քեզ,— ասաց պապը:— Նրանք որ իրենց ուժածի չափ պարեն և ուրախանան, էլ չարություն չի դիմանա նրանց առաջ: Ո՛չ չարություն, ո՛չ էլ ցուրտ... Դրա համար էլ հրեղեն են: Էդպես է, ապա պետք է պարեն, որ հրեղեն մնան: Թե չէ հողին կպած բեռնաքարշներ կդառնային...

— Պա՛պ, հրեղեն ձիերը փայտի մեջ են ապրո՞ւմ,— հարցրեց թոռը:

— Հրեղենը կրակի մեջ պետք է ապրի, մատա՛ղ քեզ: Կրակի մեջ ու մեկ էլ հեքիաթներում: Հրեղենը, որ կրակից դուրս գա, էլ բան չի դիմանա նրա դեմ. կայրի ու մոխիր կշինի: Դրա համար էլ պետք չեղած ժամանակ կրակից դուրս չի գալիս... Հեքիաթն էլ կրակի նման բան է, հեքիաթի պես տաք կրակ չկա... Էդպես է, մատա՛ղ քեզ:

Վարդան թոռը փակեց վառարանի դռնակը, և հրե նժույգները մնացին իրենց հրե աշխարհում: Փակ դռնով վառարանը նորից սկսեց գոռալ դրսի քամու և ցրտի վրա: Տղան մոտեցավ պատուհանին ու փորձեց տեսնել, թե քամին ինչպես է ձգում, իրարով խփում ծառերի մերկացած ճյուղերը: Նրան թվում էր, թե դրսում և՛ ծառերը, և՛ քարերը, և՛ անգամ սառույցը մրսում են: Որպեսզի նրանք շատ չմրսեն, նա մատների ծայրերով կամացուկ շոյեց ապակու վրայի պարդանախշերն ու պատկերացրեց, որ հրեղեն ձիերը պար են բռնել սառույցի վրա: Ձիերի սմբակների տակ սառույցը ջարդոտվում, մանրանում է, ապա նրանց տաք շնչից հալվում, հոսում ձորի կողմը...

Պապը հազաց, տեղից վեր կացավ, մոտեցավ դռանն ու կիսաբաց արեց այն: Տանիքից պոկված ու քամուց հալածված մի քանի փաթիլ տուն ընկան և հալվեցին հատակի վրա:

— Պա՛պ, չմրսե՛ս,— ձայն տվեց թոռը:— Դրսում ցուրտ է:

— Որ մրսեմ հիվանդանամ, դու հեքիաթի հրեղեն ձիով անմահական ջուր կբերես պապիդ համար,— ժպտաց Վարդան պապը:

— Կբերեմ,— խոստացավ թոռը:— Անպայման կբերեմ: Բայց դու մի՛ մրսի...

— Սարե՛ս, մատա՛ղ քեզ,— ուրախանալով ասաց պապն ու դուրս եկավ ձյունոտ պատշգամբ:

— Ցուրտ է, պա՛պ,— նորից կանչեց թոռն ու ինքն էլ պատշգամբ ելավ:

Սառը օդն արագորեն մտավ նրա հագուստների տակ ու սառեցրեց մարմինը: Ցրտից փշաքաղվելով՝ նա ցանկանում էր անմիջապես տուն մտնել, բայց նայեց պապին ու մնաց դրսում: Հետո տաքանալու համար տեղում վեր-վեր ցատկեց, շարժումներ արեց ձեռքերով ու մոտեցավ պապին: Ապա, որպեսզի պապը հանկարծ չմտածի, թե ինքը մրսում է, նա անհոգ հարցրեց.

— Պա՛պ, հրեղեն ձիերն ո՞ւր են գնում կրակի միջից:

— Բարձրանում են վերև, կռիվ տալիս քամու հետ ու գնում արևի մոտ, ձո՛ւտ ջան,— բացատրեց պապը նրա կողքը շրջվելով:— Ցուրտ է, դու ինչի՞ դուրս եկար:

— Ես չեմ մրսում,— անտարբեր ասաց Վարդանի թոռը:— Շատ ցուրտ չէ... Հրեղեն ձիերն ինչո՞ւ են արևի մոտ գնում, պա՛պ:

— Բա ո՞նց, պա՛պը մատաղ քեզ,— նրա մազերը շոյեց Վարդանի պապը:— Արևն է հրեղենի տունը: Աշխարհի հուրն ու կրակն արևի մեջ է, ձո՛ւտ ջան, աշխարհն արևո՛վ է ապրում...

Թոռը մոտեցավ պատշգամբից իջնող աստիճաններին ու դուրս կախվելով, նայեց վերև, որտեղ արեգակն էր փայլում: Արեգակի ճառագայթները, չնայած մի քիչ սառն էին ցրտից, շլացրին նրա աչքերն իրենց պայծառությամբ: Նա կկոցեց աչքերն ու տեսավ, որ այնտեղ, արևի լուսավոր սկավառակի վրա ծառս են լինում կրակե բաշերով անթիվ-անհամար նժույգներ:

— Հրեղեն ձիերի տունն արևն է,— ինքն իրեն ասաց նա, իր նոր հայտնության վրա զարմացած ու ուրախացած:— Ամռանը նրանք դուրս են գալիս իրենց տանից ու տաքացնում աշխարհը: Իսկ ձմռանը բոլորը տուն են գնում, որպեսզի չխանգարեն Ձմեռ պապին...

Նա նորից կկոցած աչքերով արևին նայեց:

— Արի՛, արի տո՛ւն գնանք, մատա՛ղ քեզ,— առաջ ընկնելով ասաց պապը:— Էս անտեր քամին դանակի նման կտրում է...

Նրանք տուն մտան, և պապն ասուր փակեց դուռը, որպեսզի ցուրտը ներս թափանցելու ծերպ չգտնի: Իսկ թոռը վազեց վառարանի մոտ ու բացեց դռնակը: Ածխացած փայտերից ծնված բոցերը ձգվում էին դեպի ծխնելույզ-խողովակը: Բայց Վարդան թոռն արդեն գիտեր, որ դրա միայն անունն է ծխնելույզ: Իրականում այն դեպի արև տանող ճանապարհն էր, որով երկինք էին բարձրանում հրեղեն նժույգները...

Տանիքների վերևում շարունակում էր խենթ սուլել ու թռչկոտել անբարիշտ քամին, որը նախանձով էր նայում դեպի արեգակը գնացող հրեղեն նժույգներին...

պիոներական հավաքների, համամիութենական զանազան տոների (սպարտակիադաների, փառատոների) ժամանակ: Դրոշը ամեն օր բարձրացվում է երկրի բոլոր պիոներական ճամբարներում, միջազգային մանկական ճամբարներում, որ գնում են սովետական պիոներների պատվիրակությունները: ՍՍՀՄ պետական դրոշը դրոշակակիր խմբի առաջնորդությամբ դուրս է բերվում մեր երկրում անցկացվող մանկական միջազգային հանդիպումների, հավաքների, փառատոների, հանդիսավոր բացումների ու փակումների ժամանակ:

Մեր հայրենիքի դրոշը հպարտորեն փողփողում էր Հյուսիսային բևեռում, պապանինականների հերոսական էքսպեդիցիայի ժամանակ, և Հարավային բևեռում, ցրտաշունչ Անտարկտիդայում: Սովետական մարտիկները մեր հայրենիքի՝ հաղթանակի դրոշը բարձրացրին ֆաշիստական ռայխստագի վրա:

Կարմիր դրո՛շով էին կամավոր-կոմերիտականները յուրացնում խոպանը, Սիբիրի նավթային հարստությունները: Այսօր, ի պատիվ աշխատանքային հաղթանակների, կարմիր դրոշ են բարձրացնում ԲԱՄ-ի շինարարները:

Սովետական արբանյակներն ու տիեզերանավերը մեկ անգամ չէ, որ տիեզերք են բարձրացրել, այլ մոլորակներ՝ Լուսին, Վեներա, Մարս հասցրել մեր պետության խորհրդանիշները՝ ՍՍՀՄ գերբն ու դրոշը:

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ՊԵՏԱԿԱՆ ՀԻՄՆԸ ՀԱՍՏԱՏՎԱԾ Է ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ:**

Հիմն բառը հունական ծագում ունի և նշանակում է հանդիսա-

վոր երգ, որն արտահայտում է պետության գլխավոր ծրագիրը: Երբ հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, երիտասարդ հանրապետության հիմնը դարձավ «Ինտերնացիոնալը»: 1944 թվականին մեր երկրում հաստատվեց նոր պետական հիմն: «Ինտերնացիոնալը» հանդիսանում է կուսակցական հիմնը: Դու գիտես, որ այժմ, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը հաստատել է ՍՍՀՄ նոր հիմնը: Առաջին անգամ այն հնչեց ամբողջ երկրով 1977 թվականի սեպտեմբերի 1-ին, երբ դու կրկին գնացիր դպրոց:

Նրա տեքստն ու երաժշտությունը պետք է իմանա ամեն մի լենինյան:

Պատանի պիոներները, շարքում լինեն թե դահլիճում՝ հանդիսավոր հավաքներին, տոներին, պիոներական ողջույն են տալիս ՍՍՀՄ պետական հիմնի, «Ինտերնացիոնալի» և միութենական հանրապետությունների հիմնի կատարման ժամանակ:

**ՄԵՐ ԲԱԶՄԱԶԳ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԸ ՀԱՆԴԻՍԱՆՈՒՄ Է ՄՈՍԿՎԱՆ, ՈՐԸ ՄՈՏ ՈՒ ՀԱՐԱԶԱՏ Է ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ ՍՐՏԻՆ:**

Մայրաքաղաքը պետության գլխավոր քաղաքն է: Մոսկվան մեր երկրի գլխավոր քաղաքը դարձավ 1918 թվականի մարտի 12-ին, երբ սովետական կառավարությունը Վլադիմիր Իլյիչ Լենինի գլխավորությամբ Պետրոգրադից տեղափոխվեց Մոսկվա: «ԲՈԼՈՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ ՀԱՄԱՐ ՆԱ ԹԱՆԿ Է, ՈՐՊԵՍ ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ, ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ, ԳԻՏՈՒԹՅԱՆ ՈՒ ՄՇԱԿՈՒԹՅԻ ԽՈ-

*Փետրվարի 23-ը սովետական բանակի և ռազմածովային նավատորմի օրն է*

# ԵՐԳ ԱՊՐՈՂՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ*

Զոհվածները, ասում են,
Վառ աստղեր են դարձել
Խավար գիշերներին
Մեզ համար են այրվում,
Որ ճանապարհը մեր
Միշտ լուսավոր լինի:

Զոհվածները, ասում են,
Ծաղիկներ են դարձել
Դաշտերի մեջ կանաչ,
Ժայռոտ բարձունքներին:

Եվ ամեն մի գարնան
Աչքերում են ծաղկում
Բոլոր աղջիկների:

Զոհված զինվորները
Թռչուններ են դարձել
Եվ երամ առ երամ
Սավառնում են հիմի:
Ազատ ու անարգել
Սահմանները են անցնում
Բոլոր աշխարհների:

# ՎԵՏԵՐԱՆՆԵՐԻ ՀԵՏ

*Նստած եմ Երևանի № 96 դպրոցի դահլիճում և բոլորի հետ, բոլորի նման ամենայն ուշադրությամբ լսում եմ Հայրենական պատերազմի վետերան, օդային կործանիչների գնդի գլխավոր ինժեներ, պահեստի մայոր Գրիգոր Այվազովին: Նրա կուրծքը վահանակավորված է Հայրենական պատերազմի առաջին և երկրորդ աստիճանի, նաև Կարմիր աստղի երկու շքանշաններով ու բազմաթիվ մեդալներով: Պատերազմի վետերանը վառ ու տեսանելի պատմեց իր գնդի մարտական ուղու մասին, կապույտ երկինք մխրճվող կործանիչների, որ վարում էին նշաձև ու խոշոր, երկնագույն ու սև աչքերով, հաղթանդամ ու բարալիկ կազմվածքով, կատակասեր ու լուրջ, խիզախ ու համարձակ օդաչուներ, որոնք կռվում էին մոլեգին վրեժխնդրությամբ, երկնքի յուրաքանչյուր մետր կապույտի համար, իսկ եթե ընկնում էին, ապա միայն փառքով ապրելու համար:*

*Իններորդ դասարանցիներ Մանվելն ու Անուշը վարում էին հաղթանակի օրվա հանդեսը, նրանք ամբողջ երեկոյի ընթացքում, հավասար հաջողությամբ խոսում, երգում, արտասանում էին թե՛ ռուսերեն, թե՛ հայերեն: Երեկոյի կազմակերպիչ-ղեկավարը՝ Վերգինե Գրիգորյանն ղեկավարում էր երգչախումբը:*

*Մեծ տպավորություն է թողնում Գայանեի արտասանությունը. ծնողները, հյուրերը, մանկավարժները լսում էին նրան խոնավացած աչքերով, իսկ վերջին շարքերում նստած աշակերտներին դա դեռ այնքան էլ հասկանալի չէր:*

*Հաղթանակի օր է՝ տարեդարձ, ուրախանալ էր պետք, ուրախացնել: Եվ հմայիչ արտաքինով պատանին՝ Մանվելը, միջախաղ է ներկայացնում «Ատամնաբույժի մոտ» անվանումով:*

*Մանվելը այնպիսի վարպետությամբ էր կատարում բուժման արարողությունը, որ դահլիճում բոլորն էլ ձեռքները աչքերին են տանում, այս անգամ ծիծաղի արցունքները սրբելու համար:*

*Ունկնդիրները տևական ծափողջյուններով շնորհակալություն հայտնեցին վետերաններին, ինչպես և իններորդցիներին՝ ստացած տպավորության, գեղագիտական մեծ հաճույքի համար:*

Ա. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

# «Ազնիվ պիոներական խոսք»

ՆՈՆՆԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Անահիտը ննջարանում տխուր պառկած և բարձը գրկած, մտածում էր: Վեր կենալ չէր ուզում: Մտքերը շատ մռայլ էին:

Երեկ դասարանում այնպիսի՜ մի դեպք պատահեց...

Ֆիզիկայի դասն էր: Ուսուցչուհին շարքերի արանքում, երկրորդ նստարանին հենված դաս էր բացատրում: Հետո մոտեցավ գրատախտակին, որ գրի իր բացատրած բանաձևը, բայց կավիճը անհետացել էր: Կավիճը վերցրել էր Ռուբիկը, որին դասարանում «Կոլոտ» էին կանչում, քանի որ մյուս Ռուբիկը «Ինքնաթիռ բռնող» էր:

Ուսուցչուհին պահանջեց, որ կավիճը դնեն տեղը: «Կոլոտի» հոգն էլ չէր: Հետո ուսուցչուհին ամեն մեկին առանձին-առանձին դիմելով, պահանջեց կանգնել և հարցրեց, թե ով է կավիճը վերցրել: Շատերը չէին տեսել, քանի որ դաս էին լսում:

Անահիտն ինքն էլ չէր տեսնի, եթե իր կողքի նստած Լիլիթը չիրեր իրեն և փոթկալով ցույց չտար գրատախտակի մոտ կռացած Ռուբիկին, որը գաղտագողի մոտեցավ և վերցրեց կավիճը: Գայանեն էլ տեսավ, բայց նա Ռուբիկի հետ չէր խոսում և չարձագանքեց:

Հետո ուսուցչուհին յուրաքանչյուրից պահանջեց ասել «ազնիվ պիոներական խոսք»: Եվ բոլորն էլ պիոներական ազնիվ խոսքով երդվեցին, որ չեն տեսել, թե ով է վերցրել կավիճը:

Երբ հերթը հասավ Անահիտին, նա կանգնեց, շիկնեց, գլուխը կախեց և... լռեց: Լիլիթն ու Գայանեն, ի կարմանս Անահիտի, կանգնեցին ու շատ հանգիստ երդվեցին:

Իսկ ինքը՝ Ռուբի՞կը... Նա նույնպես երդվեց: Եվ երդվեց, նայելով ուսուցչուհու աչքերին: Եվ ստացվեց, որ դասարանում միայն ինքը՝ Անահիտը գիտեր, թե կավիճն ինչ է եղել: Մնում էր մտածել, թե դա Անահիտի արածն է: Բայց նրա աչքերում այնքան կարոտ ու ազնվություն կար, որ ուսուցչուհու կասկածը փարատվեց:

Դասից հետո բոլորը գնացին տուն, իսկ ուսուցչուհին Անահիտին տարավ ուսուցչանոց: Անահիտի համար այնքան ծանր էր կանգնել ուսուցչանոցի դռան մոտ, առավել ևս, որ բոլոր ուսուցիչները ներկա էին և նախատինքով նայում էին իրեն: (Գոնե Անահիտին այդպես էր թվում): Նա կարմրատակած, աչքերը գետնին հառած, անշարժացել էր:

Հետո նա ինքն էլ չհասկացավ, թե ինչպես վերցրեց իր պայուսակը և... կամացուկ դուրս սահեց ուսուցչանոցից:

Հետևյալ օրը նա պետք է դպրոց գնար, հանդիպեր ուսուցչուհուն, նայեր ընկերներին: Ինչպե՞ս էր լինելու այդ ամենը:

Երանի հիվանդանար ու դպրոց չգնար:

Իրեն ստիպեց վեր կենալ, ստիպեց պատրաստվել և պայուսակն առնելով, ճանապարհ ընկավ...

Երանի թե դպրոցից արդեն վերադառնալիս լիներ, ոչ թե դպրոց գնալիս:



Մոսկվա. Կրեմլ

**ՇՈՐԱԳՈՒՅՆ ԿԵՆՏՐՈՆ, ՈՐՊԵՍ ՄԵՐ ՄԵԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏԵՐՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՐԴԱՆԻՇ», — Մոսկվայի մասին այսպես է ասել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը:**

**Մայրաքաղաքի՝ հերոս-քաղաքի դրոշի վրա կան Լենինի երկու շքանշան և «Ոսկե աստղ» մեդալ, Հոկտեմբերյան հեղափոխության շքանշան: Դրանք հայրենիքի պարգևներն են մոսկվացիների մարտական ու աշխատանքային սխրանքների, Հոկտեմբերի հաղթանակին բերած մասնակցության համար:**

**Մեծահասակների հետ միասին մայրաքաղաքի պատանի պիոներներն ամեն ինչ անում են, որպեսզի Մոսկվան դարձնեն կոմունիստական օրինակելի քաղաք:**

**Յուրաքանչյուր պիոներ պետք է սրբորեն հարգի մեր երկրի պետական խորհրդանիշները՝ խաղաղության, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության, եղբայրական համերաշխության խորհրդանիշները:**




ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

— Էն, որ ետ ու վեր գնացած մեծ պոչեր ունի,— ասաց տղան,— որ մոխրագույն ու հանգիստ է, էդ եզը մեր հորթն է եղե՞լ:

Հայրը դանդաղեց, մտածեց ու ասաց.

— Ինչո՞ւ ես հարցնում:

— Որ հորեղբայրը լծել ու չարչարվում էր՝ մեկը նա էր: Նա քաշում էր, ուժեղ էր, մյուսին սեղմում գերանի տակն էր կոխում:

— Դու մի տարեկան ես եղել՝ նրան տարել են,— ասաց հայրը,— դու նրան որտեղի՞ց ես ճանաչում:

— Մեր կովի նման է,— ասաց տղան,— մայրիկն ասում է մեր հորթերից է:

— Մեր կովի մեծ ախպերն է,— ասաց հայրը:— Չե՛ռ քաշիր,— բարկացավ հայրը,— ոչ մի բան էլ մերը չի, ձե՛ռ քաշիր:

— Մի բան էլ հարցնեմ ու... Անտառապահը Քառանց բլուրին կանգնել նայում էր, բայց չէր մոտենում, կանգնել նայում էր: Հորեղբայրն ասաց՝ «Մոտենաս թե չէ՝ լծելու եմ»: Իրավունք չունե՞նք անտառից չոր գերան տանենք:

— Չոր գերա՞ն, չոր փե՞տ: Իսկ որ,— ասաց հայրը,— ասում ես լծի փոխարեն լատան կտրեց, հետո որ ասում ես գերանը ընգնում էր՝ լատանն ու լինգն է՞լ չոր էին:

Դուրս եկան պառիվերի գյուխը: Տղայի առանձին ուղին այդտեղ խառնվում էր սարի մեծ ճանապարհին: Գետինն այդտեղ միշտ բաց էր լինում: Սահնակի անցնելու համար տղան երեկ էր ձյուն լցրել, բայց դարձյալ բաց էր և դեղին, փշրկուն ավազահողը հալել ու ներծծել էր ձյունը. այդ հաճարենու տակ միշտ, երբ նույնիսկ ծառերի կեղևը սառնամանիքից տրաքում էր, մի քիչ ջերմություն կար՝ օրորոցի մանկան շնչի չափ, և տղան սահնակի անցնելուց հետո այդտեղ կանգ էր առնում ու ժպտում: Սահնակն այդտեղից տղան այսպես էր անցկացնում. վերևում կենտ բոխու մոտ տղան սահնակը կանգնեցնում էր, գալիս գրկում ու ձյուն էր լցնում մերկ գետնին, գրկում ու նորից էր ձյուն բերում, ոտքերով տափակացնում ու նորից էր բերում, հետո գնում կանգնում էր կենտ բոխու տակ՝ սահնակի ետևը, ձեռքերի մեջ թքում ու սահնակով նշան էր բռնում այնտեղից այստեղ: «Դեպի Գերմանիա՝ առա՛ջ»,— և թափով բերում էր անցկացնում սահնակը: Սահնակը նա կանգնեցնում էր պառիթափի ուղիղ գլխին և ետ գալիս, կանգնում էր հաճարենու տակ և ժպտում թվացյալ կամ իրական ջերմության մեջ:

— Չարչարվում ես:— Հայրը ոտքով մի ձնակտոր շպրտեց դեպի մերկ գետինը:— Չեմ խփվել ու իբր թե եկել եմ, բայց քեզ չարչարում եմ:— Հայրը ոտքը տակը տվեց ու ձյուն շպրտեց դեպի բաց գետինը:

— Չի պահում,— ասաց տղան,— հալվում է:

— Ե՛տ գնա,— բարկացավ հայրը,— քեզ չարչարում եմ, գնա տո՛ւն:

Տղան առաջ ընկավ:

— Այգու չափա՛րը վառեցեք՝ մինչև,— ասաց հայրը:— Էլ փետի չգաս:

— Անտառը էստեղ՝ ամոթ չի՞ չափարը վառենք:

— Ամոթը քեզ չարչարելն է, չափարը վառելը ամոթ չի:

Բայց տղան նրան ինչպե՞ս ասեր, որ չարչարանք, այո՛, թեկուզ մի քիչ կար, բայց շաբաթը մեկ նրա կենդանի ծանր գոյությամբ այդ ամբողջը սրբվում էր, տղային դրսից ու ներսից գոլ ջրով ասես լողացնում էին, և տաք վառարանի սենյակում տղան անընդհատ զգում էր հոր ապահով ներկայությունը, գիրք էր կարդում, չէր հասկանում և անընդհատ զգում էր, որ նա տանն է, մտածում էր Հովհաննես Թումանյանի մասին և զգում, որ հոր ներկայությամբ է մտածում, երկուշաբթի առավոտյան նրա անկողնին նայում էր թաքուն հույսով, և միշտ ծանր տագնապով էր նկատում անկողնի պարապը: Շան պես՝ նրա հոտը տղան ճանաչում էր: Փայտը տղան նրա համար էր կրում՝ մի կենտ կիրակիի համար: Իսկ ի՞նչ անեին Հայկը, Հովիկը, Նորիկը, Ժորիկը, նրանց հայրը ո՛չ շաբաթը մեկ էր գալիս, ո՛չ էլ երբևէ գալու էր, Լավրիկն ու Յուրիկը, Ալբերտը: Ալֆոնը, Գիլբերտը... Անհեր, անտղամարդ տների միջով հայրն ամոթով է անցնում, երևի այդ պատճառով է գիշերները գալիս:

---

[1] Սկիզբը՝ «Պիոներ» № 1:

— Ռուսաստան,— ասաց հայրը,— կարծեմ դահուկը մոմում ու մոմած դահուկով են գնում: Տակիրը մոմ են քսում:

Հայրը կռունկով խփեց սառույցի կոշտին՝ չկոտրեց, և նորից խփեց, ապա կացինը դուրս քաշեց և բնքով փշրեց ու բերանով տաշեց սառույցի այդ թումբը, որ սահնակը միշտ թափ էր տալիս ու քիչ էր մնում շպրտվեր ճանապարհից: Տղան ինքը կացնի բերանով երբեք չէր փշրի սառույցը, որպեսզի հոր կացնի բերանը սառույցի մեջ հանկարծ քարի չառնի, չնայած տղան կարողանում էր, արդեն կարողանում էր կացինը սրել:

— Ուրեմն կարելի է սահնակն էլ մոմել,— ասաց հայրը,— մոմած հեշտ կլինի:

— Դժվար չի,— ասաց տղան,— քո ռանդայով տակերը ռանդել եմ, մոմածի նման են, որ փախչում է՝ հազիվ եմ պահում: Մեկ էլ,— ասաց տղան,— մոմ չկա: Ամբողջ մեղրամոմը՝ մերն էլ, իրենցն էլ՝ տատը մոմ էր սարքել, տարել մատուռում վառել: Պապը աստծուց վախեցավ՝ մոմի համար չխոսեց, բայց մայրիկը չվախեցավ:— Տղան ժպտաց:— Մայրիկը ճվճըվում էր, բայց տատը մենակ աղոթում ու աստծուն ասում էր. «Տեր աստոծ, խախուսան է, բայց սիրտը մաքուր է, բարկանա՛լ մի... Էս է տղես կգա, տատն էր ասում, մոմ էլ կսարքի, մեղր էլ կսարքի, հաց էլ կըսարքի... փեթակի պես կաշխատի տղես»:

Հայրը տխուր ժպտաց.

— Էս է եկել եմ:

— Էս է եկել եմ,— կրկնեց հայրը:— Եկել եմ, կամ, բայց ո՛չ ձեզ համար կամ, ո՛չ իմ ախպոր երեխաների, ո՛չ էլ իմ հորումոր... Ո՞նց են ապրում,— հարցրեց հայրը,— ապրում ե՞ն:

Տղան պատմեց.

— Որ հեռվից նայում ես՝ չափարին կարծես ձեռ տված չի, բայց մանր ճյուղերը բոլորը պոկել վառել են... կեղևները, խնձորենիների չոր ճյուղերը, խոտի կոշտ կրճոնը, կարտոլի աշնան ցողունները... թույլ կրակ է լինում,— ասաց տղան,— պապի ծնկները երևի հազիվ են տաքանում: Պապը մրսկան է:

— Արյունը դանդաղել է:— Ծեր հոր ու պառավ մոր մասին հայրը հետո կարծես էլ չէր մտածում, բայց երբ խոսեց՝ տղան տեսավ, որ նրանց պառավ տունը հոր համար առանձին մեծ հոգս է:— Ես ի՞նչ անեմ,— ասաց հայրը,— օրենք կա, օրենքով, եթե ծնողները մեծ են ու նրանց խնամող է հարկավոր... նրանց փետը, ջուրը... նրանց կրակը, հացը... նրանց թուլությունը, հիվանդությունը... իրավունք չկա, որ նրանց խնամողը բանակ գնա, իմ փոքր ախպերը օրենքով հիմա բանակում չէր լինելու... բայց իմ հերնումերը ամաչեցին: Ամաչեցին, որ ուրիշներն ահա զույգ-զույգ տղա են կորցրել, մնուսուգի էս օրերին գյուղում իրենք ահա բախտավոր են: Հեռացրին,— ասաց հայրը,— իմ փոքր ախպորը գյուղի աչքի առաջից հեռացրին, իմ հերնումերը վախեցան իրենց մեծ բախտից:

Տղան տատին միշտ խնդրում էր իրեն աղոթք սովորեցնել, և տատը չլսելու էր տալիս: Տղան այնուամենայնիվ հավատում էր, թե տատի մրմունջներից դենը մի ուրիշ աշխարհ կա, որն ինքը չի տեսնում, քանի որ այդ աշխարհի դուռը բացելու կախարդական աղոթքը չգիտի, և պապն ամեն անգամ թույլ, իրենց կրակի չափ հազիվ կայծկլտալով ժպտում ու ասում էր՝ դպրոցականին իրավունք չի աղոթք գիտենալ: Երբ ինքը հիվանդ էր և մեղմ հորաքույրը խընձոր էր բերել ու տատը եկել էր աղոթելու, աչքերը փակ՝ տղան ականջ պահեց տատի մրմունջներին. դրանք արևի, գառների, կանչերի, մրգերի, գույների մասին հիշողություններ էին կամ տատն ապագայի մեջ էր տեսնում այդ կնգուն կանչերն ու մեղվանոցի թանձր բույրը, և միայն վերջում, ամենավերջում տատը խոստանում էր իր որդու և տղայի հոր ձեռքով ինչ-որ դուռ կապել՝ մատուռի ջարդված դուռը, ամե՞ն: «Սիմոնիս կասեմ կսարքի»: Ս-ս-ս-ս, լսում էր տղան: Բայց այդ մասին հիմա տղան հորը բան չասաց, թե չէ դուրս էր գալիս, որ սարի ձմեռանոցներից մինչև գյուղի ներքևի ծայրը հայրը բոլորին պարտք է:

Հեռավոր երկրաշարժի նման՝ քամին հոնդում էր ձմռան գորշ անտառում, բայց ծառերը չէին ճոճվում, կամ նրանց ճոճքը չէր երևում: Անտառի գլխով՝ բաց, սպիտակ, կապտած սարերն էին: Գագաթների ձյունը թույլ, մեռնող ծիրանի էր տալիս, իսկ լանջերը սառցակապույտ էին: Անտառը նույնքան մեռյալ էր, ինչքան լեռների հպոր անկենդանությունը, բայց սարերի կարծր լռության տակ անտառը ջերմ ու բարի արարած էր թվում: Անհավատալի էր, որ անտառից վերև լեռների մեռյալ սահմաններից դենը ահա մարդկային կենդանի օջախ կա, խոտի պահով դեզ, տաք, ծանր, դդրդուն ցուլերը դուռ են կոտրել, կանայք աղջրկա պես վախենում են, լուր են ուղարկում և այլն... և ավելի քան անհավատալի էր, չնայած այդ խոտը տղան ինքն էր, փոցխել ու մոր հետ դիզել, թե այդ սարերը երբևէ կանաչ են եղել, բարակ, թեթև, սիրելի գերանդին պնգացել է այստեղ խոտհարքներում, և ձյուների տակ հիմա նուրբ ծաղկաբույր խոտ կա: Բայց այս մի եզակի անգամ հայրը միայն տղայինն էր, նրա երկար տասներկու տարիների մեջ այս ճանապարհին հայրը միայն տղայինն էր, և տղան ոչ մի կերպ չէր հրաժարվի նրա կողքերից ու ետևից շան նման վազվզելուց:

Ձմեռանոց գոմի մոտ, սարի մյուս երեսին, կոլխոզի մեծ դեզը և սարի այս երեսին՝ Կապույտ աղբյուրից ներքև, տղայենց խոտի բլուրը աշնանը նույն օրն էին դրվել: Եղաններն ու պարանները ուսներին՝ կանայք տղայենց դռանը դանդաղեցին ու սպասեցին մորը: Մայրը մի վայրկյանում հիվանդացավ, պառավեց, հին կոճղին նստեց ու ասաց, թե ինքը նրանց ջորին չի: Ջափարի գլխով Իսկուհի մորաքույրը եղանը մեկնեց խնձորենու վրա միակ խնձորին ու ասաց. «Հողե՛մ բախտավոր գյուխդ, բա մե՞նք ենք քու ջորին»: Հետո ճանապարհին նրանք փեշերն ու տոպրակները վայրի թթու խնձոր էին լցնում, և սարսափելի էր ըզգալ նրանց ծարավը խոտի բեռան տակ: Մայրն ասաց. «Էլ ինչո՞վ եմ մարդատեր, որ անտերներիդ նըման խոտ եմ շալակելու»: Այդ ժամանակ Քառանց բլուրին հառնեց ընկեր Ուցյունի կերպարանքը, և մայրը կանանց ասաց. «Հողե՛մ ձեր մատնիչ գյուխը»: Օրիորդ Ուցյունը դպրոցի վարիչն ու մաթեմատիկայի ուսուցիչն էր, բայց ղեկավար ու ուսուցիչ էր կարծես ամբողջ գյուղի վրա: Նախագահը կանանց հետ վախենում էր կռվել, կանանց կառավարումը հանձնել է օրիորդ Ուցյունին: Պարաններն ու եղանները ուսներին՝ հնազանդ աշակերտների պես կանայք ճամփա ընկան:

Թամար մորաքույրը իր կարտոլն ու ցիլ պանիրը դրել էր տղայի մոր տոպրակում և նրան իրենից հեռացնում էր, ինքը նրանից հեռու էր կենում, ասում էր. «Աչքիս մի՛ երևա, որ հացս չուտեմ»: Կանայք ծիծաղում էին՝ «Թամարի հացը»: Կանայք տղայի մորն ասացին. «Չէիր գալիս, չէիր գալիս, վերջը երեխայիդ էլ բերեցիր»: Մայրը նրանց խաբեց. «Իմ կավակը չի ուզում իր մերը ջորի լինի, ինձ հետ հավասար եզան պես պիտի լծվի»: Կանայք ասացին. «Հողե՛մ բախտավոր գյուխդ»: Շրթունքները չոր ու ճաքճքած՝ նըրանք տակնիվեր նայեցին վայրի խնձորենուն, և տղան բարձրացավ ու չղահարեց, կանայք ճվճվալով տակից փախան, տղան ծառը բեռնաթափեց, գետնի վրա մի խնձորի չափ պարապ տեղ չկար, բայց տղան մինչև կիջներ՝ չալվարի քանդված կարը բռնելով՝ ծառի տակ մի խնձոր չկար, ավլած էր:

Կապույտ աղբյուրից ներքև՝ հոր հնձած խոտհարքում կանայք կատակ ու շիտակ, արտասուքոտ ժպիտով անիծեցին կռների ուժը այն հնձվորի, որ այդտեղ եղել էր, հնձել էր, հիմա այդտեղ չէր, բայց կանայք նրան այնպես էին զգում, որ կարծես նա այդտեղ էր: «Իի՜ի,— անիծեցին կանայք,— կայծակը թիկունքի՜դ տա. էս ո՞վ է, ա՜խչի, էս սրտախորովը»: Այնինքն թե՝ նրա թիկունքին խփելու համար իրենց ձեռքը թույլ կլիներ: Մոր շրթունքները անձայն շարժվում էին, մայրը թաքուն ժպտում էր, նա չգիտեր կրապի՞ իրեն ու նրանց անեծքին չպատասխանի, թե՞ գոհանա, որ ամուսինը համարյա թե իրենը չի, բայց կա, անտառի ու գյուղի գլխով տասը կիլոմետր ներքևներում է:

Աղբյուրի ձորակում տղան ետ մնաց, մոլորվեց, իրեն ետ պահեց ու ձորակից դուրս չեկավ, մինչև կանանց ձայները չմարեցին: Ներքևում, անտառին չհասած, իր Մնացականյան պապերի հին գոմերն էին, որ հետո կոլխոզը վերցրել էր, բայց հիմա լքված էին: Հնձող ձեռք չկար, ոչխարը ձմեռելու էին քշում Քոռի հովիտները: Հին գոմերից ներքև, համարյա թե անտառում, քարոտ լանջին տղայի Ավետիք պապի խոտհարքն էր, ձորի անտառների վրայով Ճրագթաթ անտառոտ լեռան Մեծ բացատում՝ Հարություն պապի հին գոմերն ու հին խոտհարքը: Բոլորը, բոլորն ամայի ու լքված էին, ոչ մի տեղ գերանդի չէր շարժվել: Միայն այստեղ՝ Կապույտ աղբյուրի տակ, բաց լանջին, մի երկու ժամով եղել էր տղայի հայրը:

Թե լանջի այդ խոտհարքը հայրը ե՞րբ էր հնձել՝ տղան չէր տեսել: Հայրը երևի տուն էր եկել գիշերով, մի րոպե գուցե թե կանգնել քնած երեխաների գլխավերևը, կոշտ մատով նրա կզակը խավարի մեջ երևի թե գտել էր տղայի նիհար այտը, հետո հապշտապ, ինքը իրեն կռռով պոկելու պես, դուրս էր եկել ու բարձրացել սարերը, որովհետև շատ մեծ անամոթություն կլիներ լույս արևի մեջ լայնաթիկունք ու առողջ կանգնել գյուղում՝ թե ես ահա կամ և ինձ համար գերանդի եմ քաշում:

Այն առավոտ տղայից առաջ աղջնակն էր զգացել, որ հայրիկը եկել է, և մայրը ժպտացել ու շոյելով խաբել էր, թե նրա երազում է եկել, բայց մի օր հետո, երբ խոտն արդեն չորացած կլիներ, մայրն ստիպված էր տղային ասել, թե սարում իրենք հավաքելու խոտ ունեն:

Զուտ հնձածից՝ ուղղակի տաշված գետնից տղան առնում էր հոր խաղաղ ուժի ներկայությունը: Դա մի գիշերվա ու մի մարդու գործ չէր, բայց մայրը, երբ տղան ու նա վերադառնում էին, լաց եղավ ու ասաց, որ կուտ մենակ ու մի գիշեր է հնձել: Խոտհարքի ներքևներում, խոտի տակ պահած, տղան գերանդին ու հեսանը գտավ: Գերանդվի կաղնե բռնակը հոր ափի մեջ հղկվել, դարձել էր կաշվի չափ ողորկ: Գերանդին մաշված՝ հազիվ մի մատ լայնության էր, հեսանը մաշված՝ մատիտի չափ բարակ էր, գերանդին ու հեսանը հոր բռան մեջ ամբողջ գիշեր իրար կերել էին: Զնգուն, վարար սառը Կապույտ աղբյուրը հեռու չէր, բայց որպեսզի ամեն անգամ աղբյուր չըհասնի, հայրը խոտհարքի ճկուտ մեջտեղը քանդել գուռ էր արել և ցամաքած՝ ամեն անգամ վրա էր ընկել ու ծծել, մինչև տակը ցամաքեցրել այդ գոլ, պըղտոր հեղուկը:

Միայն փոցխով ու բաց ձեռքերով տղան, ինչքան կարող էր, խոտը ի մի բերեց: Ինչքան հնարավոր էր, կիտեց, բայց բլուր կապելու համար եղան էր պետք, մայրը վերադարձին գալու էր եղանով: Տղան հետո տեսավ ու նկատեց պապի փայտե երկժանանի եղանը-և ամաչեց, որ չի հասկացել գնալ, իր համար անտառից եղան կտրել: Հոր հեսանը գոտու տակ և հոր գերանդին ձեռքերում՝ տղան խոտը հավաքելուց հետո մի քանի անգամ փորձեց հնձել, բայց գերանդին խոտի վրայով փախչում էր, տղան երբեմն կարողանում էր մի երկու բուռ խոտ պոկել, բայց հոր մաքուր աշխատանքի կողքին դա անշնորհք կրծմրծոց էր, տղան այդտեղից հեռացավ, հոր խոտհարքից հեռու փորձեց, չկարողացավ գոնե մի փոքրիկ բացատ անել խիտ, ջրուտ, մի տեսակ յուղոտ ու սայթաքուն խոտի մեջ:

Մայրը չէր գալիս: Տղան Կապույտ աղբյուրի մոտով եկավ լեռան գլուխը, մյուս երեսի ամբողջ լեռնահովտով մեկ խոտի բլուրներ էին շարժվում, կարմրատանիք գոմի մոտ կիսատ դեզ էր, մրջյունի չափ փոքր մի երկու հոգի դեզի վրա էին, մի տեղ միայն խոտը եզներով էին քաշում, բայց հեռավորությունից էր թե ինչ՝ եզների քաշանը կանանց շալակներից մեծ չէր երևում: Արձակ մի մրջնանոց, մի մեծ հովիտ, ուր լուռ տնքում, լուռ անիծում, լուռ լարվում էին կանայք: Այս կողմի ձորից՝ գյուղից, լուռ անտառների վրայով դպրոցական զանգի մի ծվեն եկավ, իսկ այն կողմը՝ լուռ հովտում՝ կանայք, պարաններով բեռներին կապված, որպեսզի իրենց բեռներից չփախչեն և բեռներն էլ իրենցից չփախչեն, մի քիչ էլ մոտեցան դեզին, և նրանց տառապանքի հետ այդպես նույն պահի մեջ՝ դպրոցը, եղունգների մաքրությունը, կարմիր թանաքը, քերականությունը, թվաբանության խորամանկ խնդիրները և անհոգ ոտանավորները մի անխիղճ, մի մեծ անհեթեթություն թվաց:

Գիշերը, վերադարձին, մայրը լուռ պոկվեց կանանց լուռ խմբից, եկավ, տղան առանց եղանի համարյա թե կարողացել էր դարսել ու տրորել խոտի բլուրը, ինքն ու մայրը միասին վերջացրին ու լուռ վերադարձան:

Դժվար էր պատկերացնել թե անձևը, անկարող, ճմճվան նրանց աշխատանքն ահա հայր լեռներում հիմա մի կենդանի օջախ է պահում՝ մի տաք ձմեռանոց, ուր տաք, ծանր, դղրդուն ցուլերը խփում դուռ են փշրում և կթվորուհիները նայում են չգիտես վախով թե հիացումով:

Տղամարդու թե կնոջ ծղրտոց եկավ, տղան սրվեց, և դատարկ գլորվող, ուղղակի փախչող սայլի դղրդյուն եկավ: Ծղրտոցը կրկնվեց, եզան վրա էին բարկանում, և ծղրտոցը հուսահատ չէր, և նույնիսկ չար չէր, առատ ծղրտոց էր, այդպես կարծես խաղ էին անում: Հայրը հեգնեց.

— Բա ասում ենք տղամարդ չկա... փնգոցը ծըմակն է գցել:

Մատղաշ խիտ հաճարկուտի միջով պառավների գլխին երևաց փախստականի շարժումը, հետո կտրուկ դարձ տվին մարդն ու սայլը և մատղաշ, խիտ հաճարկուտի նեղուցով կախվեցին դեպի հայրն ու տղան: Սայլվորը եզների առջևից փախած գալիս էր, սայլն ասես նրան հալածում էր, նրա գլխարկի ականջները թափահարվում էին, տղան կարծես թե տեսավ սայլվորի ծաղրածուորեն վախեցած աչքերը, վախենում էր, երևի, հանկարծ սայթաքի ու սայլի տակ ընկնի, ճիպոտը ձեռքին փախչում ու փախչելով սպառնում էր եզանը՝ Ծիրան...

## ԱՍՏՂԵՐԸ

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

Հայրս ցորեն ցանեց:
Եվ երբ ծլեց արտը,
նայեց ու հիացավ:
Եվ երբ եկավ ժամը,
արտը հասկակալեց,
նայեց ու հիացավ:
Նա իր հողոտ բռում
ցորեն հասկը սեղմեց,
և... մեծ հրաշք եղավ:—
Նրա հողոտ բռում
հատիկները բոլոր
մարգարիտներ դարձան:
Եվ արարչի նման,
հայրս նայեց նորից,
նայեց ու հիացավ:
Հետո շռայլ բռով
մարգարիտներն անթիվ
նետեց դեպի երկինք,
ու հատիկներն անթիվ,
մարգարիտներն անթիվ
աստղեր դարձան հակինք:

Ամառվա տաք արևի մեջ, կանաչ արոտներում, եզներից մեկը գուցե թե լցվում, ծիրանագունում էր. բայց հիմա երկուսն էլ գորշ, գզգզված բրդոտ էին, վիթխարի փորները կողքեկողք նետելով չէին կարողանում կոտրել իրենց թափը:

— Կամա՛ց, ա՛յոա, տակով ես անում,— ծաղրեց հայրը:

Սայլվորը տվեց անցավ հոր ու որդու միջով, հայրը կանգնեց սայլի ճանապարհին ու կռնչաց: Սաես դահուկների վրա՝ եզները չռվեցին ու կանգ առան: Տղան հետո կարող էր ասել, որ սայլի ճանապարհը հոր հետ ինքը կտրեց:

Քիչ ներքևում սայլվորը կանգ էր առել, մեղավոր ժպտում էր: Ասաց.

— Էդ անտերները բոբիկ են, պճեղները չի բռնում:

— Դու,— ասաց հայրը,— դու պայտա՞ծ ես՝ բոբիկ չե՞ս:

Սայլվորը ճիպոտի ծայրով ետ հրեց բանակային ականջավոր գլխարկը և ուրախ բարևեց.

— Բարի լույս:

Եզներից մեկը խոպում էր, խպկում, խեղդվում ու դարձյալ խռպում էր. սամիներից մեկը չկար, լծված էր մի սամիով ու սամոտենով, սամոտենի ծայրը գունդկապ էին գցել, լծի ծակով անցկրել ու կարճ հագցրել մյուս սամուն, այդ նեղվածքը եզանը խեղդում էր:

Սայլվորը դատարկ թեքը շինելի գրպանը դրեց, ճիպոտի ծայրով ետ հրեց ականջակալ խավոտ գլխարկը, և այտերը աղջկորեն կարմիր ու փափուկ նրա դեմքին մի անիմաստ ու մեղավոր հրճվանք շողաց: Կարմիր այդ ուրախությունը գուցե սայլի առաջ այդպես երեխայորեն փախած գալուց էր, գուցե իր համար այդպես մշտապես կար, բայց հոր թուխ, ջղուտ ներկայությամբ նա կնոջ տպավորություն էր անում:

— Մեկ թողել,— ասաց նա,— գնացել քաղաքի համար ծառ ես կտրում:

Հոր փոխարեն տղան վար վզաց և ուսի վրայով մի վայրկյան թաքուն նայեց նրան՝ նրա շինելի թեքը դատարկ էր, ուրեմն եղել էր ռազմաճակատում, հետո տղան հայացքը սահեցրեց հոր վրայով՝ խառը ծպիտից ու քամահրանքից հոր դեմքը անդուրեկանորեն ծամածռվում էր:

— Ա՛յ տա, տո մե՛ծ մարդ,— և հոր ձայնը կրնգաց,— մի դուռն ինչ է, որ մի դռան համար ինձ քաշ եք տալիս սարը:

Դեռ ժպտալով՝ սայլվորն ասաց.

— Էդ խի՞ ես նեղանում:

Կարծես մի հարվածով մեխ խրեր՝ հայրն ասաց.



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



— Բա ի՞նչ անեմ՝ որ չնեղանամ:

Ուրախությունն անցնելու հետ սայլվորի դեմքը դանդաղ փոքրացավ, բերանը կլորացավ կծկվեց ու տեղավորվեց կուտ քթի տակ, վիրավորված, երեխայի պես՝ նա հիմա կարող էր միայն լաց լինել, բայց խոսեց.

— Եկել է խեղճ կնանոնց վրա նեղանում է: Տղամարդ չկա, տնաշե՞ն, տղամա՛րդ:

Հայրն այդ ժամանակ նայում էր եզներին, և նրա խոսքը թարս խփելու պես եղավ.

— Էդ դու էլ ե՞ս կնիկ:

Տղան հայացքը կախեց:

— Դե որ միթևանի եմ,— եկավ սայլվորի հուսահատ բողոքը,— կնիկ եմ ու կնկանից մի բան էլ պակաս եմ:

Դատարկ թեքի համար հայրը նրան չխղճաց.

— Թե չէ Նոյի ժամանակ սար էիք ջուր տալիս:— Կարելի՞ էր այդպես տրորել մարդու խեղճ ներկայի հետ նաև անցյալը:— Ժռաճուտի պես բերանները բաց կերի են սպասում: Մի պարապ մեխ խփելու համար էլ է երկու ձեռ պետք, ա՛յսա, կնանիք են:

Հայրը ճանապարհից դուրս եկավ, տղան կարծեց իրենք արդեն սայլին ճանապարհ են տալիս, տղան ուզեց ասել խեղդվող եզան ու սամոտենի մասին, բայց հայրն արդեն կացինը գոտուց դուրս էր քաշել: Հայրն այդ ե՞րբ էր նկատել խեղճ ու դաժան այդ լռծվածքը և խիտ թավուտի մեջ աչք դրել բոխու միակ մատղաշին: Ճեղակի թեթև մի հարվածով, (նույնիսկ թխկոց չելավ, և տղան ամաչեց իր ապիկար թխկթխկոցների համար), կարճ մի խշրտոցով, ուր երևացին նրա և՛ ուժը, և՛ հիանալի կարողությունը, հայրը հատեց մատղաշ բոխին, և բոխին իր բնի կողքին կանգնած մնաց... մի հարվածով այնտեղից հատեց և սամու այդ ծայրն արդեն պատրաստ էր, իսկ թե մյուս ծայրը երբ սարքեց՝ տղան չհասցրեց տեսնել, կացինը դանակի պես բռնած՝ հայրը սամու մանրիկ ոստերը հատելով՝ ձյուների միջից դուրս եկավ: Եկավ ոտքերը թափ տվեց, կացինը գոտու արանքը խրեց ու սրտնեղելով արդեն անհասցե, մոտն ասես մեղավոր ու առհասարակ մարդ չկար, ծամածռվեց ու առանց նայելու կուտ մատներով քանդեց մյուս սամու ծայրի սամոտենի մեռյալ հանգույցը, որը պիտի եզանը թեկուզ խեղդեր, բայց այդ միթևանի անկարողի մոտ մինչև գյուղ չպիտի արձակվեր: Եզան բկի տակ տղան տեսավ հոր ուժեղ բութը և բութի կարծր եղունգը, իսկ իր եղունգները տղան կրծելով էր պոկոտում: Նոր սամին հիմա իր տեղում էր, եզը լծված էր կիպ ու ապատ, և հայրը շոյում էր եզան աչքերը: Սայլվորի երեխայական քենն անցել էր, հորը նա հիմա նայում էր դարձյալ բաց հրճվանքով... բայց կարելի՞ է

իր գործը այդպես հանձնել ուրիշի և քեզ վիրավորելու իրավունք տալ նրան... չէ՞ր կարելի, թեկուզ միթևանի, ատամներով բացել դանակի բերանը և սամի տաշել և սամոտենը կապել, պինդ կապել, մի ձեռով ու ատամներով:

— Ո՞ւմ աղջիկն ես,— ասաց՝ սայլվորը:

Մոր աղջկական և քրոջ ապագա շորի միջից՝ տղան նրան նայեց սուր թշնամանքով:

— Ես նիհար երեխային էդ ո՞ւր ես էն սառնամանիք սարը հանում,— ասաց սայլվորը:

— Հետդ ե՞տ տար,— ասաց հայրը,— սելի՛ հետ գնա, Արմի՛կ:— Հայրը սայլին ճանապարհ տվեց և ծանր ափը դրեց եզան մեջքին:— Գնա դասերի՛դ:

— Ես էլ,— ասաց սայլվորը,— տանում եմ եզները պայտել տամ, համ էլ աղ է տարվելու, քարաղ եմ տանելու տավարի համար:

— Բարի ճամփա:— Երեսն արդեն դեպի սարն ու արդեն գնալով՝ հայրն ասաց.— Գնա՛, Արմի՛կ, գնա՛, մի՛ արի, ցուրտ է լինելու:

— Արի՛, ա՛յ տղա, արի՛... արի սելո՞վ տուն տանեմ,— կանչեց միթևանին,— կարմիր ջուր են հագցրել՝ ասացի աղջիկ ես:

Երբ քո եղունգը ջարդվել է և ատամներդ չեն բռնում ու կացնի բերանը չի տաշում և այս մեծ աշխարհի ամբողջ անհարմարության մեջ քո թրջված ու երեկոյան խաղաղ սառնամանիքով փայտացած փողքերից ավելի քեզ լացացնելու չափ խանգարում է ջարդված այդ եղունգը, դու դանակդ դուրս ես քաշում և պատրաստ ես եղունգի այդ փշուրի հետ կտրել-նետել այդ անտանելի մասը: Դանակը չի բացվում, քո փայտացած մատները պտղունց չեն դառնում, և դու շեղբը կոթի միջից ետ ես քաշում ատամներով... շրթունքներդ բռնում են մետաղը, և պողպատի սառը համը քեզ կարծրացնում է, քո ջլերն ուռչում, պրկվում ու կարծրանում են: Եվ ահա դու կանգնած ես ձյուների մեջ, շալվարի սառած փողքերը քո ցնցումներից թխկում են, կարծես ձող ես տաշում՝ կտրում ես եղունգը, և երեխայի քո նիհար, մոխրագույն, չոր մաշկի մեջ տղամարդու ձիգ ջլեր են:

Արմիկ Մնացականյան անունով պատանին հեք չուներ և ոտնաձայն չուներ, եթե մի քիչ ուներ էլ՝ հայրը չէր վգա, քանի որ իր թեթև գոյությունը հոր ետևից նա տանում էր համաքայլ: Բայց հայրը խոսեց ետ չնայելով և որդու ներկայությունը չստուգելով, ասես՝ ինքը իր հետ էր խոսում, ասես որդու ներկայության վրա վստահ էր նույնքան, ինչքան իր ներկայության: Հայրն ուրեմն միթևանու մասին բան էր պատմում, պատմում էր, որ միթևանին միշտ այդպես է եղել, միշտ էդպես պատրաստ բանի է վազել... որ տասը-տասներկու տարեկան հասած տղա էր, Երկեն հողերում վարի էին, լծկանի ուսին նստած հոտաղ էր, ասացին՝ հրեն հա՛, էն ինչ կին է ձիով սարը գնում... սարի ճամփան Երկեն հողերից երևում է, ասացին՝ «Էն ո՞վ է, տեսնես, սարը գնում»... Երկեն հողերից սարի ճամփա՝ մորը ճանաչեց... տասը տարեկան տղա էր՝ դեռ ծիծ էր ուտում... լծան վրայով թռավ ու կարճ ճամփով, կարճ ճամփով, կարճառաջ-կարճառաջ՝ մինչև ծմակ մտնելը մոր դեմը կտրեց... կատակ ու շիտակ, լացով ու ծիծաղով՝ մորը ձիուց իջեցրեց ու խլեց իր կուրծքը, որ իր կարծիքով միայն իրենն էր, քանի որ տան փոքրն ինքն էր...

Դա հին, ուրախ, արևոտ պատմություն էր. և՛ սարի շեկ ճամփան, և՛ կանաչ այդ ապստամբությունը, և՛ որ կարմիր ձիավոր այդ կինն ահա դուրս էր գալու սարը և պեփյուռը ալիք-ալիք խփվելու էր ձիու քրտնած մուգ լանջին, դրոշի պես փռփռալու ու խրվելու էր խեղճ այդ մոր ամոթխած օձիքին... և որ գութանի ժողովուրդը ահա, շանը քփ տալու պես, նրան բաց է թողել դեպի շեկ ճանապարհ և կանգնած ծիծաղում է...

— Հետո,— ասաց հայրը,— ցելերի ներքևից դուրս եկավ, պարելով, օրորվելով գալիս էր: Մաճկալն ասաց՝ «Քնի՛ր, ա՛յ տղա, քնի՛ր, չէ՞ մանուկները ծծից հետո քնում են...» ու ամբողջ գութանավորն ասաց՝ «Քնի՛ր, ա՛յ տղա, էդտեղ նստիր քնի՛ր...»

Եվ հայր ու որդի այնպես ծիծաղեցին, որ միթևանի սայլվորը երևի լսեց, եզները կանգնեցրեց ու ականջ պահեց իր հին, ուրախ, տխուր, թախծոտ պատմությանը:

Բայց Արմեն Մնացականյան անունով պատանին, հեռվից հոր հետ այդպես ժպտալով խակ այն երեխայի վրա, որ տասներկու տարեկան էր, բայց չէր ուզում մեծ լինել, մոր կրծքից կտրվել չէր ուզում և հիմա քառասուն տարեկան էր, բայց չէր ուզում մեծ լինել... Արմիկ Մնացականյան անունով պատանին, որ արդեն վաղուց էր մեծ, այդ ուրախ պատմությունից ավելի գոհ էր այն բանի համար, որ հայրն այդպես վստահ, որդու ներկայությունն այդպես չստուգելով՝ սկսեց պատմությունը: Որդին հեք ու ոտնաձայն չուներ կամ դրանք կորցնում էր հոր հեքի ու հոր ոտնաձայնի տակ, բայց հայրը գիտեր, որ որդին այդտեղ է, ետ չգնաց, իր ետևից գալիս է: Գուցե հայրն ուսի վրայով այնուամենայնիվ նկատո՞ւմ էր նրա կարմիր ջրի ցոլքը: Թե՞ հայրն իրեն լավ գիտեր և գիտեր, որ տղան նույն ինքն է, տղան իր անցյալը և ինքը տղայի ապագան է, իր ոտնահետքերը կոխելով՝ այդպես ելնելու է սառը, ամայի, արևոտ լեռը:

(Շարունակելի)

# ԿԱՐԴԱ՛, ԳԻՐՔԸ ԲՆՈՒԹՅԱՆ

*ՎԱՀԱԳՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ*

Քեզ ի՞նչ պատմեմ... հիմա դրսում
Բուքն է պարում համարձակ,
Ձյունոտ սարն է նիրհում խաղաղ
Մշուշներում սպիտակ:

Վառարանի բոցն է ուրախ
Աչքերիդ մեջ առկայծում,
Եվ քեզ հին-հին զրույցների
Տեսիլքներն են դուրս կանչում:

Թող որ նիրհեն լեգենդներն այն
Կաղնիների անտառում,
Հեքիաթները միայն, տղա՛ս,
Մանկության մեջ են ապրում:

Մանկության հետ ծնվում են տաք
Ու մանկությամբ ներշնչվում,
Մեր բարձրացող հասակի հետ
Թև են առնում ու թռչում:

Սակայն, երբ որ ձյունը քաշվի,
Ծունկ-ծունկ սարը բարձրանա,
Դու ցա՛ծ իջիր երազներից,
Իջի՛ր՝ հանդերը գնա:

Տե՛ս, ինչպե՞ս է գարնան ամպը
Ջրերի մեջ ծնրանում,
Գառնուկների հայացքի մեջ
Ձնծաղիկն է արթնանում:

Տե՛ս, ինչպե՞ս է օրը լցվում
Արագիլի ձայներով,
Ծառերն ասես ոտքեր առել,
Թափառում են խմբերով:

Ջրերն ուրախ ծափ են տալիս
Ու իջնում են... վերևից,
Ծլվլոց է կարծես թափվում
Ծիծառների թևերից:

Սակայն դրսում ձյուն է հիմա,
Բուքն է պարում համարձակ,
Ձյունոտ սարն է քնել հանգիստ
Երազներում սպիտակ:

*Բ. ՍՈՊԵԼՆՅԱՆ*

*Լուսանկարները՝ հեղինակի*



# ՇՈՒՆԸ՝ ԶԻՆՎՈՐ



Ֆոկսը նստեց ետևի թաթերի վրա, ցցեց ծոծրակի մազերը, շարժեց աջ ականջը և կկոցեց դեղնավուն աչքերը:

«Պատրաստ է,— մտածեց կուրսանտը:— Հիմա կնետվի»:

— Նստե՛լ,— գոչեց նա:

Բայց Ֆոկսն արդեն օդում էր: Մի պահ երևաց կարմրաշեկ փորը, և կուրսանտը փռվեց գետնին:

— Հետաքրքիր շուն էր,— պատմում էր Նալչիկի ծառայողական-հետախուզական շներ վարժեցնող միլիցիայի դպրոցի դասատու Ե. Գ. Բոնդարուկը:— Հետքով հիանալի գնում էր, չէր վախենում ո՛չ դանակից, ո՛չ ատրճանակից, բայց այնքան չար էր ու նենգ, որ ոչ ոք չէր կարողանում նրան ձեռնասուն դարձնել, կամ, ինչպես մենք ասում ենք, նրա հետ կոնտակտ ստեղծել, ստիպել աշխատել միլիցիայի համար: Ըստիպված որոշեցի ծայրահեղ միջոցի դիմել՝ կռիվ սարքել և մի լավ պատժել շանը: Վարժեցման ընթացքում ընդհանրապես հազվադեպ են առանց կռվի յոլա գնում: Եթե շունը նույնիսկ մեկ անգամ անպատիժ կծի վարժեցնողին, այնուհետև միշտ կհարձակվի նրա

վրա, կամ, ինչպես մենք ասում ենք, անընդհատ ուշադրությունը կշեղի ուրիշ կողմ: Բայց եթե մարդը հաղթի, շունը այդ կիրքի հավիտյան և կհամակերպվի:

Պատրաստվեցի մարտի: Ֆոկսը վաթսուն կիլոգրամ էր կշռում, ես՝ հազիվ հիսուն: Եթե նկատի ունենանք հարձակվող շան պոռթկման ուժը, պարզ կլինի, թե ինչ հակառակորդ ունեի ես: Երկու բամբակած բաճկոն հագա, վիզս փաթաթեցի շարֆով և Ֆոկսի հետ պարապմունքի գնացի: Սկզբում ամեն ինչ նորմալ էր ընթանում՝ վազում է Շալուշկայի ափով, նետված ձողերն է բերում: Հետո հրամայեցի նստել: Հրամայում եմ մեկ, երկրորդ անգամ: Չէ՛, շունը տանջել է ուզում, ցցեց ծոծրակի մազերը, գռմռաց: Հենց այստեղ էր, որ ես վրիպեցի՝ հարձակումից առաջ Ֆոկսը միշտ շարժում էր աջ ականջը, դա նրա սովորությունն էր, իսկ ես չէի նկատել: Հարձակմանը ես, իհարկե, չդիմացա: Բայց ընկնելիս ամբողջ ուժով ոտքով հարվածեցի: Ֆոկսը նույնիսկ չվնգստաց: Աջ ձեռքումս մտրակ կար, չնայած դա թույլ զենք էր: Դրա համար էլ Ֆոկսը հենց աջ ձեռքիցս բռնեց: Երկու տակ վատնիկները չօգնեցին՝ կոպիտ ցնցում, և թևս ընդարմացավ: Հետո նա սկսեց «խուզել», այսինքն արագ-արագ խածնելով բարձրանալ դեպի վեր: Այդպիսով մինչև կոկորդիս կհասներ: Այստեղ արդեն փորձերն ու կատակներն անիմաստ էին՝ ժանիքները մի քանի սանտիմետրանոց են: Վերջին ուժերս հավաքեցի և ուժեղ հարվածեցի Ֆոկսի քթին: Ինչպե՜ս ոռնաց, խեղճը: Ես նրան բաց թողեցի և ուղղվեցի դեպի դպրոց: Ետևիցս էլ՝ Ֆոկսը: Պոչն իրեն քաշած, ականջները՝ կախ: Այդ օրվանից դարձավ մետաքսից փափուկ, անընդհատ նայում էր աչքերիս, այսինքն՝ հրամայիր, անմիջապես կատարեմ:

Այո՛, հարմար շուն գտնելը այնքան էլ հեշտ չէ: Մասնագետները գտնում են, որ շան տեմպերամենտը շատ է կախված նրանից, թե ինչպես է տերը նրան դաստիարակում լակոտ ժամանակ: Եթե տերը ալարկոտ է, ոչ հավաք, փնթի, ապա շունն էլ նրա ճիշտ պատճենն է՝ կեղտոտ, կախ ընկած, ոչ թե քայլում է, այլ քարշ է գալիս գետնի երեսին: Իսկ եթե տերը արագաշարժ է, եռանդուն, ձիգ, ապա գամփռը նույնպես ձգված է լարի նման: Մի բառ չարտասանած՝ վազում է հրամանը կատարելու: Ամուրը իր տիրոջ հակապատկերն էր: Արդար լինելու համար պետք է ասել, որ իր թերությունների համար Ամուրը ամենևին մեղավոր չէր՝ մինչև դպրոց գալը նա մեկուկես տարի ապրել էր չափազանց սիրալիր, թույլ կամքի տեր մի կնոջ մոտ:

Իսկ կողքին միանգամայն հակառակն էր՝ արագաշարժ, եռանդուն, միշտ կռվի և աշխատելու պատրաստ Տարանը իր ետևից քարշ էր տալիս ալարկոտ վարժեցնողին: Դասատուներն այս բանը նկատեցին և խորհուրդ տվեցին փոխանակել շները:

Ես Դմիտրիին հարցրի, թե ինչու էր նա այդքան ուշ հանդիպել իր շանը, չէ՞ որ նա կարող էր իրեն հարմար շուն ընտրել այդ նույն Տարանին, քանի որ բուծարանում ընտրելու լայն հնարավորություններ կան:

— Բուծարանից մենք լակոտներ չենք վերցնում: Որպես կանոն, նրանցից լավ հետախույզներ չեն ստացվում: Վատն այստեղ ըստ երևույթին այն է, որ նրանք հոտով են աճում, քաղաքը ամենևին չեն ճանաչում, վախենում են մարդկանցից և տրանսպորտից: Դրա համար էլ մենք գերադասում ենք ջահել գամփռներ գնել ԴՈՍԱԱՖԻ ծառայողական շնաբուծական ակումբների սիրողներից: Բացի այդ, բուծարանների գամփռները քննությունների ժամանակ մեծ մասամբ կտրվում են:

Քննությունե՞ր:

— Իհարկե, շունը մեզ մոտ բարձրագույն կրթություն է ստանում, և ոչ բոլոր շներն են դրան արժանի: Ամենից առաջ ուսումնասիրում ենք շան ծննդամատյանը, իմանալու համար, թե ինչպիսի պայմաններում է նա դաստիարակվել: Ինքնըստինքյան պարզ է, որ արտաքին կազմվածքը կարևոր է՝ հասակը, գլխի կառուցվածքը, ոտքերի դրվածքը, կրծքի լայնությունը, և ամենակարևորը՝ վզի երկարությունը: Ծառայող-հետախույզ շունը համարյա միշտ գլուխը գետին կախած է հետքով գնում: Եթե նրա ոտքերը երկար լինեն, իսկ վիզը կարճ, ինչպես ասենք, դոգինը կամ բոկսյորինը, նա շուտ կհոգնի, հետևաբար և հետքը կկորցնի: Հետո ստուգում ենք շան չարությունը, բռնելաձևը, տեսողությունը, հոտառությունը, ռեակցիան կրակոցի և նույնիսկ... կատվի նկատմամբ: Դժբախտաբար, շների մեծ մասն իրենց առաջին պարտականությունն են համարում հասնել և պատառոտել կատվին: Պարզ է, որ այդպիսիները մեզ պետք չեն:

— Հավանաբար ընդունելության հանձնաժողովի անդամներից մեկը ապագա վարժեցնո՞ղն է լինում:

— Անպայմա՛ն: Բայց ամեն ինչ չէ, որ շան մասին կարողանում ենք քննությունների ընթացքում իմանալ: Երբեմն այնպես է լինում, ինչպես իմ և Ամուրի դեպքում էր եղել: Ավելի վատ էլ է պատահում՝ մարդու սիրտը չի կպչում շանը, և վերջ: Բայց չէ՞ որ շանը պետք է դաստիարակել, մաքրել, լվալ, խուցը կարգի բերել, և վերջապես օրը երկու անգամ կերակրել: Վարժեցնողը չունի ո՛չ հանգստյան, ո՛չ տոնական օր: Հետախույզն այնպես է դաստիարակվում, որ տիրոջից բացի ոչ ոքից ուտելիք չի ընդունում, և ուտելիքը, ի դեպ, տերն էլ հենց պետք է եփի:

Ընդհանրապես շան միրտը գրավելու ուղիները տարբեր են: Մեկը հաղթում է խստությամբ, մյուսը՝ փաղաքշանքով, երրորդը՝ քաջությամբ: Բայց մի օրենք ընդհանուր է բոլորի համար՝ լավ վարքի համար խրախուսել, վատի համար՝ պատժել: Այս է վարժեցման մեթոդի էությունը:

Վարժեցման ամբողջ սիստեմը հիմնականում կառուցված է Պավլովի՝ պայմանական ռեֆլեքսի ուսմունքի վրա: Դպրոցում, ուսման ընթացքում, գամփռների մոտ ծառայողական - հետախուզական աշխատանքների համար անհրաժեշտ երեք տասնյակ պայմանական ռեֆլեքս են մշակում: Բայց դա սահման չէ: Հռոմի խուլպրկուստիկանության սերժանտն այնպես է պատրաստել իր Դոկսին, որ սա դարձել է խուլպրկու շների՝ աշխարհի չեմպիոն: Դոկսը աշխարհում միակ շունն է, որ կարող է առանց կրակոցի ատրճանակը դատարկել, սկզբում նա անվտանգ վիճակի է բերում պահպանակը, բացում է ատրճանակը և ատամներով ու թաթերով փամփուշտները դուրս է բերում:

Սա արդեն, այսպես ասած «պրոֆեսորական» աշխատանք է: Բայց սկզբում ամեն մի շուն վարժեցման ընդհանուր և հատուկ կուրսեր է անցնում: Այլ կերպ ասած, մշակվում են հմտություններ՝ վարժեցնողի կողքից քայլել, նստել, կանգնել, պառկել, սողալ, իրերը բերել, ձայն արձակել, խոչընդոտները հաղթահարել: Այս բոլորից հետո միայն շներին սովորեցնում են իրերը հոտոտել, ուրիշ իրերի կույտի մեջ որոնել, հետքով գնալ, հետախուզել տեղանքը, դարան մտնել, հանցագործին բռնել և շատ այլ բաներ: Ինչպես տեսնում եք, գործ շատ կա: Բայց վարժեցնողի համար ավելի դժվար է: Այսօր նա սովորեցնում է իր շանը, վաղը որպես «հանցագործ» հետք է թողնում, թաքնվում է ձեղնահարկերում և ներքնահարկերում, մարտի է բռնըվում կատաղած հետախույզի հետ: Ըստ որում պետք է շան հետ այնպես կռվել, որ նա քեզ հաղթի, անպայմա՛ն հաղթի: Վարժեցման ժամանակ շունը պետք է վստահ լինի, որ ինքը շատ ավելի ուժեղ է մարդուց, և դրա համար էլ ոչ մի բանից, բացարձակապես ոչ մի բանից չպետք է վախենա:

Երեք օր քայլում էի դպրոցի բակում և չէի համարձակվում դասատուներից որևէ մեկից բուշլատ և երկարաճիտ կոշիկներ խնդրել: Վերջապես վճռեցի:

— Կարո՞ղ եմ մեկ օրով... «հանցագործ» դառնալ:

— Խնդրեմ: Միայն նկատի ունեցեք, որ՝ չար շներ էլ ունենք, կարող են կծել: Համենայն դեպս, մի խորհուրդ տանք՝ դպրոցի բակում մոտ հարյուր գամփռ է դեսուդեն շարժվում, եթե նրանցից որևէ մեկը մոտ գա կամ հարձակվի, տեղնուտեղը անշարժացեք և ոչ մի դեպքում չդիմադրեք: Անշարժ կանգնած մարդուն նրանք չեն դիպչում: Հաչում են, հսկում մինչև տիրոջ գալը, բայց չեն կծում:

Վրաս ամենից առաջ Ջեկը ուշադրություն դարձրեց: Թափով թռավ, չար լռությամբ դունչը դեմ արեց փորիս: Ես խորհուրդը հիշեցի և անշարժացա: Համենայն դեպս ձգված ժպտացի: Ջեկը հարմար տեղավորվեց և բասով «հա՜ֆ» արեց: «Տես է՛, ի՜նչ սիրալիրն է,— մտածեցի,— ողջունում է»: Բայց երբ ձեռքս տարա ֆոտոապարատին, Ջեկի շրթունքները դողացին: Ես արդեն գիտեի, որ դա ծայր աստիճան բարկացածության արտահայտություն է և միաժամանակ վերջին նախազգուշացումը, դրանից հետո շունը, որպես կանոն, հարձակվում է:

Էլի անշարժացա: Ջեկը է՛լ ավելի հարմար տեղավորվեց և աչքը ինձնից չկտրելով, սպասեց տիրոջը: Իսկ ես հիանում էի իմ հսկիչով: Բարձրահասակ, լայն կրծքով, բաց հարդագույն, բայց քթարմատի, ճակատի, ականջների, վզի, մեջքի, ազդրերի և պոչի վերջին մասը սև-փայլուն մազերով են ծածկված: Նույնիսկ քթի ծայրը թաց-սև էր: Վերջապես երևաց տերը՝ կուրսանտ Նիկոլայ Ռուսակովը, և Ջեկը դժկամորեն ինձնից հեռացավ: Հետո հաջողվեց մոտիկից ծանոթանալ. նստել էինք Շալուշկայի ափին և հանգստանում էինք: Մենք բուտերբրոտներ էինք ուտում, իսկ Ջեկը շաքարի մի մեծ կտոր էր կրծում: Այնքան էլ հեշտ չէր ստացել նա այդ համեղ ուտելիքը, շատ էր ջանացել դրան հասնելու համար: Կոլյան ստիպում էր նրան վազել բումով և սանդուղքով, հրամայում էր թռչել փոսերի ու առուների վրայով, սողալ, բերել հին կոշիկը:

Սկզբում Ջեկը չէր կենտրոնանում: Բայց Կոլյան նորից ու նորից էր նրան ուղարկում «Առաջ» հրամանով, նույնիսկ ինքը մի երկու անգամ թռավ նրա հետ: Շուտով Ջեկը դադարեց ինձ վրա ուշադրություն դարձնել:

— Լա՜վ է, Ջե՜կ, լա՜վ է,— գովեց Կոլյան:

— Խելո՛քս: Կեցցե՛ս,— վրա բերեցի ես:

— Չի՛ կարելի,— կտրեց Կոլյան:

— Ի՞նչը չի կարելի:

— Մարդկայնացնել չի կարելի: Ոչ մի «խելոքս» ու «կեցցես», «բարեկամս»: Խրախուսում են միայն համեղ պատառիկով, «լավ է» խոսքով ու շոյելով:

— Բայց փաղաքշել հո կարելի՞ է:

— Էլ ի՞նչ փաղաքշանք,— վրդովվեց Կոլյան:— Սա հո սովորական շուն չէ, սա զինվոր-շուն է: Երեք տարի ես ծառայեցի սահմանի վրա, համարյա ամեն գիշեր իմ գամփռի հետ գնում էի գաղտնաջոկատ և դիտանոց: Գիշեր է, մութ, ցուրտ է, անձրև, իսկ մենք նստած ենք թիկնոց-վրանի տակ: Այստեղ արդեն քնքշանքի տեղ չկա, երկուսիս համար էլ ծանր է,



իսկ դա ավելի է մտերմացնում:

— Բայց դուք պատրաստի վարժեցնող եք...

— Ի՞նչ եք ասում: Սահմանապահ շան հետ աշխատանքը բոլորովին այլ է՝ միշտ բնության մեջ, հեռքը թարմ է, կամ ինչպես մենք ենք ասում՝ տաք է, և ամեն ինչ կառուցվում է սահմանախախտին հետապնդելու վրա: Իսկ հետախույզ շունը առավելապես քաղաքում է աշխատում, որտեղ բազմաթիվ կողմնակի հոտեր կան, իսկ հետքն էլ, որպես կանոն սառն է: Սահմանապահ շան համար ընտրություն կատարելը անհրաժեշտ չէ, իսկ հետախույզ շան համար՝ հիմքերի հիմքն է: Իզուր չեն մասնագետները պնդում, թե սահմանապահ շունը կարող է աշխատել նախնական կրթությամբ, իսկ ծառայողական հետախույզ շանը բարձրագույն կրթություն է պետք:

Նույն օրը ես մի ուրիշ քննություն էլ կազմակերպեցի: Վարժեցնողի մեզդակած կոստյում հագա և ինչքան ուժ ունեի վազեցի անտառի կողմը: Ինձ բռնելու համար ետևիցս Ռեքսին բաց թողեցին: Շատ շուտ հասավ, ըստ որում շնչառությունը չթուլացնելու նպատակով հենց այնպես չէր հաչում: Լուռ հասավ, լուռ թռավ կրծքիս և թևս պինդ բռնեց: «Լավ,— մտածեցի,— հիմա քեզ կոլորեմ և դեն կշպրտեմ»: Որտեղի՞ց: Նույնիսկ գետնից չկարողացա կտրել: «Էհ,— մտածեցի,— կպառկեմ և քեզ գետնով քարշ կտամ, մինչև երախդ բացես»: Ինչքան էլ տարօրինակ է, մի քայլ էլ չկարողացա անել»: Դե լավ, քանի դեռ թևս բռնել ես, ես քեզ կսպանեմ»: Եվ դուրս քաշեցի դանակս, ճիշտ է՝ փայտից, բայց այնուամենայնիվ դանակ: Ռեքսը ակնթարթորեն տեղափոխվեց պինդված ձեռքիս և այնպե՜ս սեղմեց ատամներով, որ ձեռքս ընդարմացավ: Դանակն, իհարկե, ընկավ: Իսկ չէ՞ որ մեզդակած հաստ կոստյում էի հագել:

Հետո էլ ի՞նչ ասես չհնարեցի, որպեսզի ապացուցեմ, թե մարդն ավելի հնարամիտ է շնից և ցանկության դեպքում կարող է նրան գերազանցել: Թաքնվում էի խոտի դեզի մեջ, մտնում էի շների համար եփվող կերակրի բաքը, փորձում էի կորչել ավտոբուսներում և ինքնաթիռներում, ռեստորաններում և խանութներում, ավա՜ղ, ամեն անգամ ինձ գտնում էին և մի լավ զկում: Հետագայում այս բոլորին վարժվեցի և այլևս ոչնչից չէի զարմանում, փորձված վարժեցնողի պատրաստած ծառայող-հետախույզ շան հնարավորությունները պրակտիկորեն անսահմանափակ են:

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*



# Թե ինչպես մկները արջին հաղթեցին

ԳՐԻԳՈՐ ԵՂԻԿՅԱՆ

Զմռան բքին
Արջն իր որջում
Կուչ-մուչ եկել,
Նոր էր ննջում:
Մեկ էլ մի մուկ
Ներս խցկվեց,
Քաշվեց մի քունջ
Ու կծկվեց:
— Ի՞նչ կա, ճստա՛ն
Երկարապոչ,—
Մռռաց արջը
Հյուրին անկոչ:
— Դե՛, ո՛չ մի բան,—
Ասաց մուկը,—
Բա չե՞ս տեսնում
Դրսի բուքը...



Քիչ տաքանամ,
Ու կգնամ:—
Էլ բան չասաց
Հսկան մկին
Ու նինջ մտավ
Ունկը բքին:
Բայց դեռ աչքը
Կես գոց, կես բաց.
Որջում նորից
Շշուկ զգաց.
Նայեց, տեսավ
Մոտիկ քնջում
Էլի մի յոթ
Մուկ է ննջում:
Նեղվեց արջը.





— Հե՜յ, ճնճստա՛ն,
Ա՞յս ովքեր են
Որջս մտան:
— Դե՛, մերոնք են,
Բարի՛ ապեր,
Մեծը փոքրին
Չի՞ լինում տեր:
Քեզ ի՞նչ վնաս,
Թե ծվարեն,
Հո չե՞նք թողնի
Դրսում սառեն:—
Քունը գլխին՝
Էլ չվիճեց,
Ու սրանց էլ
Արջը գիջեց:
Եվ այն պահին
Երբ երազում
Մեղրի տեղակ
Թաթն էր լիզում,
Մեկն ականջը
Խուտուտ ածեց,
Զարթնեց արջը,
Աչքը բացեց:
Եվ, ի՜նչ տեսնի,
Որջում անձուկ
Դժվժում են
Մի հազար մուկ,
Գնում, գալիս,
Նայում իրեն,
Հարց են տալիս.
— Ա՜յ քեզ փորձանք,
Տեղներս նեղ,
Այս ա՞րջն ուր է
Փռվել այստեղ:
— Ճիշտ է,— ճստաց
Պառավ մի մուկ,—
Արջի հոտին
Կարո՞տ ենք մենք,
Մենք՝ մի բանակ,
Ինքը՝ մենակ,
Դուրս վռնդենք
Կորչի գնա,
Տեղը միայն
Թող մեզ մնա...

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



# ԱՐԹՆԱՑՈՒՄ

ԹԱԹՈՒԼ ԲՈՒՐՋՅԱՆ

Զմռան ճերմակ ճանապարհով,
Ծածկված ձյան փետուրներով,
Ես իջնում եմ, իջնում ձորը,
Առվի քունը գողանալու:
Ճերմակ գույներ հավաքելով,
Գարնան շողեր նվագելով,
Ես իջնում եմ, իջնում ձորը,
Քնած ծառեր արթնացնելու:
Սառույցներ կան՝ մորուք-մորուք,
Ամենուրեք ցուրտ է ու բուք,
Ես մտնում եմ անդունդները,
Գարնան ձայներ որոտալու:

# ՈՐՍՈՐԴՆԵՐԸ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Անտառում մութ էր, խորհրդավոր էր շրջապատում ամեն ինչ՝ անտառի ձայները, ծառերի ու մացառների անծանոթ ձևերը:

— Ասում ես, առաջին անգա՞մ ես անտառում գիշերն անցկացնելու,— հարցրեց Մակիչը:

— Առաջին անգամ:

Մակիչը գնում էր առջևից: Հետո գնում էր Երվանդը: Խորենը մթան մեջ հազիվ էր տեսնում նրանց: Կողքից, թփուտները, ծառաբները ճտտտելով, ետ ու առաջ ընկնելով վազում էր շունը: Խորենը լսում էր նրա անհանգիստ հևոցը: Իջան ձորը, երկար գնում էին գետակի քարքարոտ հունով, երկար բարձրանում էին թեք լանջով: Ելան մի սարահարթ, ուր անտառն ավելի խիտ էր և, վերջապես, Մակիչն ասաց.

— Հասանք:

Կիսաքանդ մի շինություն էր, նեղլիկ լուսամուտով, տանիքը ցցված գերաններով, որի ձևերը մթի մեջ չէին ջոկվում:

— Այստեղ կարելի է պատսպարվել անձրևից, քնել,— ասաց Մակիչը:

Ուսապարկերը վար բերեցին, նստեցին քարերին: Ցուրտ էր, Երվանդը ցախ բերեց, կրակ արեցին, կարտոֆիլով լի կաթսան հարմարեցրին վրան ու պառկեցին կրակի մոտ: Շրջապատում լուռ էր, լսվում էր վառվող փայտերի ճարճատյունը, անտառի գիշերային ձայները կարծես մնացել էին ցածում:

— Մի տարի, ձմռանը այս տեղերում մի ամբողջ օր գնացի արջի հետքերով,— սկսեց Մակիչը,— գազանը, հասկանալի է, հեշտությամբ իջել էր ձորերը, բարձրացել սարերը: Բայց իմ հոգին դուրս եկավ: Քիչ է պատահում, որ մարդը հասնի այս կողմերը: Գազանը այստեղ մարդուց ահ չունի, կարող է կիլոմետրերով թափառել: Գնում եմ ու մտածում, քուն չմտած



գազան է. զգույշ եղիր, դրանք ձմռանը գայլից էլ վատ են: Ձյունն էլ՝ մինչև ծնկներս, քայլելը՝ դժվար: Կեսօրին տեսա հալից ընկնում եմ, կրակ արեցի, հաց կերա, ուժս տեղը եկավ ու էլի գնացի:

Խարույկի կարմրավուն լույսն ընկել էր Մակիչի չսափրված դեմքին, կարճ ու հաստ քիթ՝ լայն քթածակերով, թավ հոնքերով:

— Օրը երեկո դարձավ,— պատմությունը շարունակում է Մակիչը:— Մտածում եմ, մենակ թե գիշերը վրա չհասնի, ձյուն կիջնի, քամի կբարձրանա, հետք չի մնա: Գնալով անտառը նոսրանում է, հետքերը գնում են, գնում, ձորի գլխին կորչում: Արջն ի՞նչ եղավ, հո իրեն ձորը չգցե՞ց: Ցած եմ նայում՝ անդունդ է, ծառերը մատնաչափ են երևում, ձյուն է: Հեռացա, կողքից նայեցի, տեսնեմ՝ քարափի գլխին, ձորապռնկի տակը քարայր կա: Արջի ճանապարհով չես իջնի, ներքև ես նայում՝ ոտք ու ձեռքդ թուլանում են: Ի՞նչ անեմ, գիշերը հո քարափի գլխին չե՞մ սառչելու: Բարձրացա վերև, քարափի ամենաբարձր տեղը, կոշիկս հանեցի, կապեցի պարանին, ցած կախեցի ու թափահարում եմ բնի առաջ: Արջը թաթը դուրս հանեց, զարկեց կոշիկին, գլուխն հանեց, զայրացած երախն առավ: Ես կրակեցի: Նա առաջ եկավ, թաթերով կառչել է ժայռի եզրից, արյունը աչքերը լցված, ետևի թաթերը թափահարում է օդում, ուզում է հենարան գտնել: Կրակեցի թաթերին, պոկվեց, գնաց ձորը ու ընկնելիս մի ռռնո՛ց հանեց, ոնց որ մարդը, ոռնոցը ձորն էր բռնել... Ի՞նչ անեի, ձորը չես իջնի, օրն էլ մթնում էր: Ետ դարձա...

Կաթսայի մեջ ջուրը քլթքլթում էր: Կարտոֆիլը եփվել էր: Նրանք հանում էին կարտոֆիլը, մատներն այրելով կճպում էին, թաթախում թղթի վրա լցված աղի մեջ ու ախորժակով ուտում: Զով քամի էր անցնում ծառերի արանքով, երկինքը մութ էր:

— Գնում եմ մի անգամ Արջակուտ կոչվող անտառամասով,— պատմելու հերթն հասավ Երվանդին,— ձմեռ է, ձյուն: Մի քանդված իջևանատուն կա անտառի մեջ, հայտնի չէ, որ ժամանակներից մնացած: Շուրջը դարավոր անտառն է՝ ոչ մի շինություն: Հասա քանդված իջևանատանը, կրակ վառեցի, շորս չորացրի, տաքացա, հաց կերա: Մութը ընկնում էր: Ասի, փառքդ շա՛տ, աստվա՛ծ, չորացա, տաքացա, կշտացա, կգիշերեմ, առավոտը դուրս կգամ անտառ: Այդ տարի թավուտում լավ նապաստակ կար: Քանդված այդ շինության մեջ հարմարվեցի, պառկեցի...

Երվանդը հանեց ծխամորճը, ծխախոտ լցրեց, վառեց լուցկին, ծխախոտի տոպրակը մեկնեց Խորենին: Խորենը փորձեց թղթից գլանակ փաթաթել, չկարողացավ: Մակիչը գլանակ տվեց:

— Պառկեցի...— շարունակեց Երվանդը:— Աչքս չէր կպել, ականջիս աղմուկ հասավ: Ի՞նչ կլինի... Մեկ էլ մի կխտար ներս ընկավ ու կրակի մոտ քարացած, գլուխը դեսուդեն է դարձնում, ոնց որ մեկին փնտրելիս լինի: Կրակեցի, հենց խարույկի կողքին ոտքերը ծալեց: Դեռ անելիքս չէի որոշել, ներս ընկան գայլերը, երկուսը... Երկուսին էլ տեղնուտեղը պառկեցրի: Մաշկեցի, գյուղից ձի բերեցի, որսը գյուղ տարա: Մարդիկ չէին հավատում, բայց դե մորթիներն ու կխտարը փաստ էին: Ճիշտն ասած, ես էլ երկար ժամանակ խելքի չէի գալիս, ախր հնարավո՞ր բան է, որ ոչ թե դու ընկնես որսի ետևից, այլ որսը իր ոտքով գա, ընկնի քո ճանկը:

Եղանակը սկսեց ցրտել: Ձորերից էր գալիս ցուրտ օդը: Գիշերը Խորենի բրեզենտե թիկնոցի վրա կաթկթեց անձրևը: Խորենը երկար ժամանակ չէր կարողանում քնել: Արթնանում էր անձրևի կաթկթոցից, կարծես նորից քնում, տեսնում էր հեռավոր ձյունոտ ծառերի արանքներով վազող կխտարը դեպի իրենց է գալիս, և նորից էր արթնանում և աշխատում որոշել՝ երազո՞ւմ տեսավ, թե՞ պատկերացնում էր:

Անձրևից հետո անտառում լռություն էր: Լուսաբացից առաջ անտառը հանգստանում էր: Շրջա-

## ԱՐՋԱՏԽԼԵՆԻ



Արջատխլենին սովորական տխլենու մոտիկ ազգակիցն է: Խոշոր ծառ է, մինչև 25 մետր բարձրությամբ: Սաղարթը խիտ է, գեղեցիկ, տերևները կլորավուն են: Ուղիղ, սլացիկ բունը կարող է հասնել մինչև մեկ մետր հաստության: Ծաղկում է վաղ գարնանը՝ մարտ-ապրիլ ամիսներին: Պը-

տուղները հասունանում են սեպտեմբեր-հոկտեմբերին: Առատութեն պտղաբերում է 2—3 տարին մեկ: Պտուղները հաճախ վարակվում են պտղակերով և մեծ մասամբ փուչ են լինում: Դրա հետևանքով բնական ծառուտներում անբավարար է նաև այս տեսակի սերմնային վերաճը:

Արջատխլենին մեծ հետաքրքրություն է ներկայացնում որպես հնագույն ժամանակների ծառաթփային տեսակների ներկայացուցիչ: Մեր անտառներում այդ ծառատեսակը լայնորեն տարածված է եղել միլիոնավոր տարիներ առաջ, սակայն հետագայում իր տեղը զիջել է այլ բուսատեսակների և ներկայումս պահպանվել է միայն աննշան տարածությունների վրա: Մեզ մոտ՝ Հայաստանում արջատխլենի կա Իջևանի, Շամշադինի և Նոյեմբերյանի շրջաններում, կաղնեբոխային և բոխի-հաճարային անտառներում, ծովի մակերևույթից 100—1600 մետր բարձրության վրա: Ամենամեծ բուսուտը գտնվում է Իջևանի շրջանի Թալա գյուղի շրջակայքում: Համեմատաբար փոքր տնկարկներ կան նաև Սևքարի գործարանի մոտ գտնվող «Կարմրաքար» անտառամասում, Նոյեմբերյանի շրջանի Ոսկեպար գյուղի մոտ և Շամշադինի շրջանի անտառային որոշ զանգվածներում:

Այժմ արջատխլենու բուսուտները պահպանության խիստ կարիք են զգում: Նախկինում դրանք անխնա կերպով ոչնչացվել են արժեքավոր փայտանյութը օգտագործելու նպատակով: Ճիշտ է, ներկայումս այս հնագույն ծառատեսակի բուսուտները պետական արգելավայր են հայտարարված, այնուամենայնիվ, դեռևս ծառերի անօրինական հատման դեպքեր են լինում: Այն շրջաններում, որտեղ տարածված է արջատխլենին, շատ է զգացվում պիոներ-դպրոցականների օգնության կարիքը:

Աշակերտները, կենսաբանության ուսուցիչների և անտառտնտեսության աշխատողների օգնությամբ ու ղեկավարությամբ պետք է անտառում մանրազնին ուսումնասիրություններ կատարելով հայտնաբերեն արջատխլենու բոլոր ծառուտներն ու առանձին ծառերը, համարակալեն դրանք, ամրացնեն դպրոցական անտառապետություններին կամ պիոներական դրուժինաներին և հետևեն ծառերի խնամքին ու պահպանությանը: Առաջին հերթին անհրաժեշտ է պարզաբանել պտղակերների և այլ վնասատուների առկայությունը, պայքարի միջոցառումներ կազմակերպել դրանց դեմ, բերքառատ տարիներին հավաքել արջատխլենու սերմերը, դրանք հատուկ պայմաններում պահպանել ձմռան ընթացքում (որպեսզի կրծողները չոչնչացնեն) և վաղ գարնանը ցանել անտառի այն մասերում, որտեղ արջատխլենի է հանդիպում: Դրանից հետո անհրաժեշտ է հոգ տանել, որ սերմնաբույսերն ու մատղաշը չոչնչացվեն անասունների և վընասատուների կողմից:

Միայն այս եղանակով կարելի է նպաստել արջատխլենու վերաճի ու պահպանության գործին:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ,*
*կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր*

*պատում, կարծես նոր հայտնված մշուշի մեջ. ձայները հնչում էին խուլ, հազիվ նշմարվում էին սև, թաց ծառաբները: Մակիչն արթնացավ ամենից վաղ.*

*— Դե՛, տղե՛րք,— ասաց նա,— ժամանակ չկա:*

*Ուսապարկերը թողեցին տնակում, դուռը փակեցին, որպեսզի գայլն չմտնի, վերցրին հրացաններն ու ճանապարհ ընկան:*

*— Գիշերն անհանգիստ քնեցիր, տղա՛,— ասաց Մակիչը Խորենին:*

*— Այո՛,— ասաց Խորենը:— Անսովորությունից է:*

*— Կսովորես... Խորհուրդ կտամ իջնես հովիտը: Գայլը առավոտները գալիս է ջուր խմելու, դատարկ ձեռքով չես վերադառնա:*

*Մակիչը քիչ ետ ընկավ, և Երվանդը ասաց Խորենի ականջին.*

*— Արջի մասին, որ նա պատմեց, այդպես չի եղել: Ասում են, արջը նրա ձեռքից պոկել, ձորն է գցել կոշիկը: Նա մինչև գյուղ եկել է՝ մի ոտքը բոբիկ:*

*Խորենը անցավ լեռնանցքը, դուրս եկավ սարահարթ և ապա, թաց արահետի վրա սայթաքելով, սկսեց իջնել հովիտը: Արևը դեռ չէր բարձրացել, անտառում մշուշը ցրվում էր, և արդեն տաք էր: Անտառի եզրին և մինչև գետը, ծառերից ազատ, արևկող սարալանջին, առատ աճել էին հատապտղաթփերը: Անտառից ոչ հեռու խաշամը սևացել էր հավամրգի հյութից. վաղ առավոտյան ինչ-որ մեկը տրորել էր հավամրգի թփերը: «Ո՞վ արած կլինի»,— մտածեց Խորենը: Եկավ գետափ, շրջապատը զննեց: Գետի հունն այստեղ խաղաղ էր, ջուրը՝ մաքուր: Ավազի վրա երևում էին արջի հետքեր: Մայր արջը քոթոթների հետ թավալվել էր ավազի վրա, ապա թփուտներում հավամրգով քաղցրացրել էր բերանը: Խորենը հետքերով գնաց մինչև թփուտները, ետ եկավ: Երևի բրդոտին դուր է գալիս այս վայրը, և նա ամեն առավոտ հայտնվում է այստեղ: Սողաց թփերի արանքը, արմունկի տակ խոտ դրեց և, արմունկներին հենված, նայում էր: Թփերի արանքից երևում էր ամբողջ գետափը, մինչև հովտի հեռուները, մոտակա սարի մառախլապատ ստորոտները, թփուտներով ծածկված ամբողջ սարալանջը: Քամին փչում էր ետևի կողմից, և*

## ՌՈՒԶՎԵԼՏԻ ՀԵՌԱԳԻՐԸ

Ֆրանկլին Դելանո Ռուզվելտի պրեզիդենտության տարիներին, ամերիկյան զինվորականները որոշում են հարավային նահանգներից մեկում հրաձգարան կառուցել, հենց այնտեղ, ուր կարապների հազվադեպ տեսակ էր ապրում:

Զինվորականներին կարապները քիչ էին հետաքրքրում: Գիտնականները բողոքեցին դրա դեմ: Բանը հասավ պրեզիդենտին:



Ռուզվելտը երկու կողմի կարծիքներին էլ ծանոթացավ: Շուտով զինվորականները ստացան հետևյալ հեռագիրը. «Հանված դատավճիռը կարապների օգտին է, ի վնաս բանակի: Բանակը պետք է իր բույնը դնելու այլ վայր գտնի»:

## ՋԵԿ ԼՈՆԴՈՆԻ ՆԱՄԱԿԸ

Ջեկ Լոնդոնը շատ պարտաճանաչ մարդ էր և իր վեպերի ու պատմվածքների ձեռագրերը հրատարակիչներին էր ներկայացնում ճիշտ ժամկետին: Բայց մի անգամ նա այդ չկարողացավ անել: Հրատարակիչը նրան գրեց. «Հարգելի՛ պարոն, եթե երկու օրվա ընթացքում ես չստանամ ձեր պատմվածքը, ապա անփական

ԺՊԻՏՆԵՐ ● ԺՊԻՏՆԵՐ ● ԺՊԻՏՆԵՐ ● ԺՊԻՏՆԵՐ ● ԺՊԻՏՆԵՐ

այստեղից գայլին պառկեցնելը դատարկ բան էր: Օրը բոլորովին լուսացել էր, անտառը մաքրվում էր մշուշից, բայց գետի վրա, մինչև հովտի հեռուն, դեռ նստած էր գոլորշու պես թեթև մշուշը: Արջին խոբենը սպասում էր մոտակա անտառից, բայց գայլը քոթոթների հետ գետափի ավազին հայտնվեց հանկարծակի, հավանաբար հենց թփուտների միջից, և խոբենը ահով մտածեց, որ երբ ինքը շրջում էր սարալանջում, արջը թփուտներում է եղել, իրենից հարյուր մետրի վրա: Նա ձյուղերի արանքից կզուլ դուրս հանեց հրացանի փողը, նշան բռնեց: Արջը մոտեցավ գետափին, իրեն գցեց ջուրը, սկսեց թավալվել, շրջվեց մեջքի, ոտքերը վեր ցցեց և շռմփոցով ընկավ մեջքի վրա: Թաթերով հարվածում էր ջրին, մրթմրթում էր քոթոթների կողմը, կանչում էր: Քոթոթները գետափին այս ու այն կողմ էին վազում, դնչները մոտեցնում էին ջրին, բայց ջուրը մտնել չէին համարձակվում: Արջը սկսեց ավելի եռանդով հարվածել, միևնույն է, քոթոթները դարձյալ սիրտ չէին անում մտնել գետը: Արջը դուրս եկավ ջրից, քոթոթները դեսուդեն փախան, նա բռնեց մեկին, շպրտեց ջուրը: Քոթոթը ճղճղում էր, ջրի մեջ սոտապատառ թափահարում էր թաթերը: Մայրը ուշադիր հետևում էր ջրի մեջ չփչփացնող քոթոթին: Ամեն ինչ բարեհաջող վերջացավ, քոթոթը լողաց, ափ ելավ: Մայր արջը մրթմրթալով, կամացկամաց, մոտեցավ նրան: Խոբենը մտածում էր, երեկոյան խարույկի մոտ հարցնել Մակիչին. «Տեսն՞լ ես, թե ինչպե՞ս է մայր արջը քոթոթներին լողալ սովորեցնում»: Արջը կանգնած էր՝ կռնակով դեպի նա: Խոբենը դեմքը հպեց հրացանին, մատով շոշափեց ձգանը: Արջը բարձրացավ երկու թաթերի վրա ու թըր՛մփ, իրեն նորից գցեց ջուրը: Սուզվեց, ելավ, նորից գցեց ջուրը: Սուզվեց, ելավ, նորից սուզվեց, բերանով մի ձուկ հանեց ու շպրտեց ափ: Քոթոթներից մեկը վերցրեց ավազի վրա թպրտացող ձուկը և ջուրը գցեց: Մայր արջը խոր շունչ առավ, նորից սուզվեց հանեց մի նոր ձուկ ու գցեց ափ: Քոթոթը ջուրը գցեց նաև այս ձուկը: Արջը դժգոհ փնչացրեց, դուրս եկավ ջրից, իրեն թափահարեց ու թաթով տուր թե կտաս քոթոթի քամակին. քոթոթն օդի մեջ մի շրջան գծեց ու՝ թըր՛մփ, ընկավ ջրի մեջ: Հետո մի կերպ ջրի երես ելավ ու ո՜նց է ճղճղում, թաթերով յեղաձաք հարվածում է ջրին: Վերջապես լողալով իրեն ափ գցեց: Կանգնել է ափին, գլուխը կախ, ջուրը կաթկթում է վրայից, այնպիսի խղճուկ տեսք ունի... Մայրը մոտեցավ ու սկսեց լիզել նրան...

Խոբենը կզուլ ետ-ետ սողաց, դուրս ելավ թփերից և դանդաղ բարձրացավ թփուտներով ծածկված սարալանջն ի վեր:

Թաց արահետով նա երկար քայլեց, մինչև հասավ անտառի մեջ կորած տնակը: Դեռ հեռվից առավ խորոված մսի բուրմունքը: Քաղցած էր, հոգնած: Մակիչն ու Երվանդը կրակ էին արել, վրան շարել մսով շշերը: Սյունից կախված էր վարազի մարմինը, կրակից ոչ հեռու իրար վրա ընկած էին մի քանի սպանված նապաստակ:

— Դատարկ ես գալիս, տղա՛,— ասաց Մակիչը.

— Ոչինչ, պատահում է, համեցի՛ր:

Գետնին փռված բրեզենտե թիկնոցի վրա դրեցին լավաշ հաց, մի շիշ կարմիր գինի, շարեցին մի քանի գլուխ սոխ: Մակիչը խորոված միսը շշերից քաշեց լավաշների վրա, և սկսեցին մեծ ախորժակով ուտել: Շունը դունչը թաթերին, ջրալի աչքերը հառել էր Մակիչին:

— Հը՛, մեղքդ կգո՞ւմ ես,— ասաց Մակիչը շանը, ապա դարձավ ընկերներին,— սա գլուխը կախ գնում է առջևից, իսկ շղիկը ոտքերիս տակից փախչում է... Բա կարելի՞ է... Պառավել է, պետք է սպանեմ, ո՞ւմ է պետք այդպիսի շունը:

Շունը կարծես հասկանում էր և շարունակում խեղճ-խեղճ նայել տիրոջը:

— Կսպանեմ,— ասաց Մակիչը,— մեկ էլ այդպես աշխատես, կսպանեմ:

— Դու դրան վե՛րջ տուր, ես Դիլիից քեզ համար լավ շուն կբերեմ, խոստացավ Երվանդը և շարունակեց.— Ես էլ գնում եմ այսօր բացատով, մեկ էլ շղիկը ցատկում է թփերի միջից, ուղղակի իմ դեմ նըս տում, փակում ճանապարհս: Ինձ չի էլ նկատում: Շփոթվում եմ, պարկապես շշմում, անելիքս մոռանում: Իսկ

ձեռքով կպատռեմ պայմանագիրը: Ի տարբերություն Ձեզ, ես միշտ իմ խոսքի տերն եմ»:

Ջեկ Լոնդոնը պատասխանեց. «Հարգելի՛ պարոն, երանի ես էլ ամեն բան անեի միայն ձեռքով... Բայց ի տարբերություն Ձեզ, ես աշխատում եմ նաև գլխով»:

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ





շլդիկը ճանապարհին նստած, ականջներն է այս ու այն կողմ դարձնում, ասես ես գոյություն չունեմ: Ա՞խ, դու, ուրեմն, արհամարհո՞ւմ ես, այսպե՞ս... Ճիշտ, ինչպես հեռուստատեսային հաղորդման մեջ: Հրացանը ուսից վար եմ բերում ու շլդիկին... երե՞կ ես տեսել, թե՞ այսօր: Մի՞թե աչքիս երևաց: Գնում եմ, ետ եմ նայում ու մտածում եմ՝ խսկապե՞ս աչքիս է երևացել... Իսկ վարպետին սարերից այն կողմ խփեցի, թավուտում:

— Դու գետափին ոչինչ չտեսա՞ր,— հարցրեց Մակիչը:

— Տեսա՛,— ասաց Խորենը:

— Ի՞նչ:

— Արջ:

— Շա՞տ էր հեռու:

— Քսան-երեսուն մետր:

— Արջը նրանից քսան-երեսուն մետրի վրա է եղել, ու նա չի կրակել,— ասաց Մակիչը ո՛չ այն է կարմացած, ո՛չ այն է վախեցած:

Խորովածը կերան, գինին խմեցին, կշտացան: Ծխախոտ վառեցին, կրակի մոտ թիկն տված ծխեցին, էլի ուրիշ որսորդական պատմություններ պատմեցին: Կրակը վաղուց մարել էր, երբ ուսապարկերն ու որսի շալակներն առան, վերցրին հրացանները ու սկսեցին դանդաղ իջնել դեպի դաշտավայրի գյուղերը:

— Ուրեմն, ասում ես, արջը քեզանից մի քսան-երեսուն մետրի վրա՞ էր,— հարցրեց Մակիչը:

— Մի քսան-երեսուն մետրի,— ասաց Խորենը:

— Եվ դու չկրակեցի՞ր:

— Չկրակեցի:

— Վախեցա՞ր,— ասաց Մկոն:

— Գուցե և վախեցա:

— Արջը նրանից երեսուն մետրի վրա է եղել, ու նա չի կրակել, թո՛ւ,— ասաց Մակիչը:— Դու այլևս անտառ պիտի չմտնես, այո՛, անտառ պիտի չմտնես:

Խորենը չխեց, թե՛ չխելու տվեց: Գնում էր, ականջը՝ անտառային ձայներին, թեթևակի ժպտալով, նրա աչքի առջև էր դեռ մայր արջը, որ դաս էր տալիս քոթոթներին:

• Լույս է տեսնում 1923 թվականից

ՊԻՈՆԵՐ 2. 1978 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝

ԳԱՂԻՆՅԱՆ ՍՈՒՍԱՆՆԱՅԻ

(Նոյեմբերյանի շրջ. գ. Կողբ, 13 տ.)

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՂԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀԸՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—83, 56—14—96:

ՎՖ 01274: Պատվեր 2436: Տպաքանակ 5·000: Տպ. 3 մամ.: Ստորագրված է տպագրության 25 I 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մնդալյարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

# ԵՍ ԷԼ ՁԵԶ ՀԵՏ

*ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ*

Թե մի փաթիլ ընկնի վար
Զմռան կապույտ երկնքից,
Ես չեմ ասի, որ եկար,
Եկար, փաթի՛լ, երկնքից,
Այլ կճչամ կարոտից.
— Իջե՛ք դուք էլ, իջե՛ք վար:

Թե փաթիլներն իջնեն վար
Երամի պես ճայերի,
Ես չեմ ասի, որ եկաք,
Ես կճչամ աստղերին.
— Իջե՛ք, իջե՛ք, իջե՛ք վար:

Թե աստղերն էլ իջնեն վար՝
Փաթիլներին թառած մեղմ,
Ես չեմ ասի, որ եկաք,
Ես կճչամ ձյուներին
Եվ աստղերին՝ բովանդակ.

— Տարե՛ք, տարե՛ք ինձ վերին
Երկինքները մշուշի,
Որ ես ձեզ հետ իջնեմ վար,
Ծածկեմ դաշտ ու սայլուղի,
Ծածկենք հյուղը հողմահար:

# ՔԱՂԱՔԻ ԼՈՒՍԱԲԱՑԸ

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

Մութը եկել ու քաղաքի
Տաք ճակատն է ափով փակում,
Ու երկնքի սև թաղիքին
Փոքրիկ աստղեր են ճերմակում:

Ու երկնքի սև թաղիքին
Լուսինն իր լույսն է տարածել,
Պաղ լույսի մեջ ու ձյուների
Ասես քաղաքն է ծերացել:

Պաղ լույսի մեջ ու ձյուների
Քամին կորած աստղ է փնտրում,
Ձյունն է նետում այս ու այն կողմ,
Սակայն փնտրածն իր չի գտնում:

Ձյունն է նետում այս ու այն կողմ,
Հառաչում է՝ չկա՜, չկա՜...

Լուռ են լուսնի դեմքը անհոգ
Ու երկինքը աստղանկար:

Լուռ է լուսնի դեմքը անհոգ.
Ու զայրույթից գնում, գալիս,
Քամին հուժկու իր թևերով
Սև թաղիքը թափ է տալիս:

Քամին հուժկու իր թևերով
Թափ է տալիս թաղիքը սև,
Զնգզնգալով ընկնում են ցած
Պոկված անթիվ ճերմակ աստղեր:

Զնգզնգալով ընկնում են ցած,
Խառնվելով իրար ժպտում:
Լուսաբացն է ծնվում այսպես
Ու քաղաք է շուքով մտնում...

Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԻՐԱՔՅԱՆԻ

Գինը 15 կ. Ինդեքս 77806